

սպասում էր վեկուցողին, որըականավոր կին հեղափոխական էր՝ երկար տարիներ վտարված Գերմանիայից և նոր էր վերադարձել հայրենիք: Ժողովուրդը հույս չուներ նրան տեսնելու, որովհետև ոստիկանությունը կարող էր հենց մուտքի մոտ նրան ձերբակալել:

Բայց ահա, ինչպես շատ անգամ, այդ օրն էլ, փոքծառու ընդհատակյա աշխատողը կարողացավ ոստիկանությանը մոլորեցնել: Իր երկու երեխաների ձեռքից բռնած, հասարակ հագուստով, որպես շարքային բանվորուհի, եկավ ու ոստիկանների առջևով մտավ ժողովարան: Եվ մինչև ոստիկանները գլխի ընկան, ժողովն արդեն գումարված ու ավարտված էր:

Այդ կինը կանանց միջազգային շարժման հռչակավոր ղեկավարն էր՝ Կլարա Ցետկինը: Նա Գերմանիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներից մեկն էր, Կարլ Լիբկնեխտի, Էռնստ Թելմանի, Ֆրանց Մերենգի, Ռոզա Լյուքսեմբուրգի զինակիցը: Նա երկար տարիներ հեղափոխական աշխատանքով կապված էր Ֆրիդրիխ Էնգելսի, Վլադիմիր Իլյիչ Լենինի և ուրիշ նշանավոր հեղափոխականների հետ:

# ԿԼԱՐԱ ՑԵՏԿԻՆ

Գերմանիայի Լայպցիգ քաղաքի բանվորական թաղամասում պիտի կայանար մասսայական ժողով, որին մասնակցելու էին մեծ թվով բանվորներ ու բանվորուհիներ: Այդ օրն էլ, դա 1890 թվին էր, ինչպես միշտ, այն դահլիճը, ուր տեղի էր ունենալու ժողովը, շրջապատված էր կապույտ մունդիրավոր բազմաթիվ ոստիկաններով: Հավաքված հոծ բազմությունը սրտատրոփ

Կլարա Ցետկինը մարքսիստ հեղափոխական էր, անընկճելի հասարակական գործիչ: Ո՛չ բանտը, ո՛չ աքսորը, ո՛չ ճնշումներն ու տառապանքները չկարողացան մազաչափ շեղել նրան իր ճանապարհից,նա միշտ ու ամենուրեք վճռական պայքար էր մղում մարքսիզմի աղավաղումների ու շեղումների դեմ:

Մեծ են ու անգնահատելի Կլարա Ցետկինի ծառա-

---

# Անմահական

*ՄԱՐՈ ՄԱՐԳԱՐՅԱՆ*

Աչք ես բացում ու արթնանում,
Քո մայրիկի ձեռքն է վրադ,
Իր աչքերի լույսն է փռած
Մահճակալիդ, բարձիդ վրա:
Վեր ես կենում մի տեղ գնում,
Քո մայրիկի սիրտն է քեզ հետ,
Կանաչ դաշտեր անցնես անհոգ
Թե սար ու ձոր, կամուրջ ու գետ,
Ծով, օվկիանոս փրփրադեզ,
Նա է անխոս ուղեկցում քեզ:
Նա է կողքիդ շունչը պահած՝
Ամեն փակված դռան առաջ,
Ամեն դժվար ճանապարհի:

Թող որ լինի ուղեցույց քեզ
Քո մայրիկի սիրտը բարի,
Եվ մայրական սերն ամենուր՝
Անմրցակից, արդար, արթուն,
Թող հորդանա ու վարարի,
Բացի ամեն դուռ ու ճամփա,
Լցվի ամեն խրճիթ ու տուն:



*Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

յությունները որպես ժողովուրդների ապատության համար· մարտնչողի: Իսկ կանանց ապատագրության, իրավահավասարության համար մղվող երկարատև պայքարում, նա միշտ ընթացել է առջևից: Դեռևս 1889 թվականին Փարիզում կայացած 2-րդ Ինտերնացիոնալի հիմնադիր կոնգրեսում նա մասնակցում էր որպես Բեռլինի սոցիալիստ կանանց պատգամավոր: Նա Ֆրիդրիխ Էնգելսի ուշադրությանն արժանացավ այդ օրերին լույս տեսած իր մի հիանալի հոդվածով և կոնգրեսում ունեցած ելույթով, որով պահանջում էր կանանց լիակատար իրավահավասարություն կյանքի բոլոր բնագավառներում:

Սկսած 1891 թվականից մինչև 1917 թվականը Կլարա Ցետկինը խմբագրում էր գերմանական սոցիալ-դեմոկրատիայի «Դի Գլեյխեյտ» («Հավասարություն») կանանց ամսագիրը: Կլարա Ցետկինը կանանց Միջազգային քարտուղարության հիմնադիրն ու ղեկավար էր: Իսկ 1910 թվականին Կոպենհագենում կայացած կանանց Միջազգային կոնգրեսում նրա առաջարկով որոշվեց ամեն տարի մարտի 8-ը նշել որպես կանանց ազատագրության միջազգային օր:

Կլարա Ցետկինը ֆաշիզմի ոխերիմ թշնամին էր, Սովետական Միության անձնվեր բարեկամը: Նա Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների մեջ տեսավ իր երազների մարմնացումը և իր կյանքի վերջին տարիները անցկացրեց Մոսկվայում:

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

## ՔԵԶ ՀԱՄԱՐ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

Այնպես պիտի ես սովորեմ,
Այնպես քայլեմ կյանքում,
Որ քո կյանքը լուսավորեմ,
Մա՛յր իմ անուշ, անքուն:

Մեր տոթակեզ լեռների մեջ
Փորեմ մի նոր ջրանցք,
Գիշեր ու զօր երգի անվերջ՝
Սիրուդ համար անանց:

Ու պալատներ կերտեմ հրաշք,
Քարից՝ վարդ ու ողկույզ,
Վառեմ ամե՛ն մի հարկի տակ
Պայծառ լույսը հոգուս:

Մարդիկ այնտեղ ապրեն անվիշտ
Ու գոհ մնան այնպես,
Իմ փոխարեն քե՛զ հիշեն միշտ,
Միշտ երանի՜ տան քեզ:

## ՄԱՅՐՍ

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

Մայրս:

Ես նրա դիմագծերը չեմ հիշում:

Իմ բոլոր հարազատների, մինչև իսկ մորիցս ավելի վաղ մեռած հարազատների դիմագծերը հիշում եմ այնքան պարզ, որ ինձ համար հեշտ կլիներ նրանցից յուրաքանչյուրի դիմանկարը վերականգնել, եթե նկարել իմանայի, բայց մորս դիմագծերը չեմ հիշում:

Ի՞նչ ասեմ: Չեմ կարողանում գտնել այն խոսքերը, որոնք պիտի կենդանացնեին իմ զգացմունքը մորս հանդեպ: Քիչ կլինի, եթե ասեմ, որ մայրս ինձ համար ամենասիրելի և ամենանվիրական էակն էր: Այդպիսին են բոլոր մայրերը:

Եթե ասեմ, որ իմ մայրը բացառիկ էր, դարձյալ քիչ կլինի: Ո՞ւմ մայրը բացառիկ չէ:

Այնուամենայնիվ ինձ այնպես է թվում, որ աշխարհի սկզբից մինչև մեր օրերը ոչ ոք չի ունեցել այդպիսի մայր: Չկան այնպիսի խոսքեր, որոնցով ես այդ հաստատեմ: Ուրեմն ավելի լավ է պարզապես պատմեմ մայրիկիս մասին, իբրև թե նա եղել է սովորական գեղջկուհի մայր:

Մորս անունը Հուրիկ էր: Բայց նրան Հուրիկ էր անվանում միայն նրա քեռին՝ Տեր-Սահակը: Ամբողջ գյուղը մորս կոչում էր Խուռիկ: Դա մեր բարբառի հնչյունափոխությունն էր, որ Հուրիկը դարձնում էր Խուռիկ, հացը՝ խաց և այլն:



digitised by A.R.A.R.@

Իսկ հայրս ասում էր՝ Կարոյի աղջիկ: Դա մեր գյուղերի պարկեշտության ոճն էր:

Տատս և հորաքույր Ալմոն, երբ հաշտ էին լինում, ասում էին՝ Խուռիկ, երբ կռված, ասում էին՝ Կարոյի աղջիկ:

Կարոն իմ պապն էր մորս կողմից: Նրա անունն էլ եղել էր Կարապետ: Ուրեմն հորս կողմի պապս Կարապետ էր, մորս կողմի պապս՝ Կարապետ: Ես՝ երկու Կարապետի թոռ: Իսկ մեր գյուղի տղաները ինձ հետ կռվելիս ինձ անվանում էին Տիտեի թոռ: Սրիկանե՜րը... Ինչպե՜ս եմ ես նրանց կարոտել...

Մորս կողմի պապիս նույնպես ես չեմ տեսել: Նա մեռած է եղել մորս ամուսնանալուց առաջ:

Նրա մահից հետո մայրիկիս հերանք աղքատացել են: Այլապես խառակոնիսցիք իմ հողագործ հորը աղջիկ չէին տա: Մայրս իր հետ իբրև օժիտ բերում է գյուղից բավականին հեռու ընկած անջրդի մի հողակտոր: Հենց այդ հողի վրա էլ իմ հայրը դառնում է իսկական խառակոնիսցի:

Մայրս մանկությունն անց է կացրել ունևոր ընտանիքում և շատ էր սիրում պատմել այդ մասին: Իմ երևակայության մեջ քանդակված է մնացել մեծ պապիս՝ Մուշոյի Վարդանի կերպարը այնպես, ինչպես մայրս է նկարագրել — հաղթանդամ, սպիտակ փառահեղ միրուքով, խոշոր, հստակ աչքերով մի ծերունի: Փառավոր է եղել նրա մահը, որ մայրս ինձ պատմել է հազար անգամ:

— Պապիկս, Հայաստանիս ասեմ, հարյուր քսան տարեկան էր, բայց գործ էր անում: Սայլ ու գութան էր սարքում, խոտ էր հնձում, կալ էր անում: Մի անգամ կալի ժամանակ եղանով հաշանը վրա էր տալիս, հոգնեց ու ինձ ասաց. «Խուռի՜կ ջան, եղանը վերցրո՜ւ, հաշանը վրա՜ տուր, ես նստեմ դեպի տակ, հանգստանամ»: Ես եղանը վերցրի, պապիկս նստեց դեպի շվաքում, ջուր ուզեց: Ես նրան փարչով ջուր տվի: Կլկլացնելով խմեց ու քնեց: Երկար էր քնել, ջոջ քույրս՝ Մարիամը ուզում էր ձեն տալ: «Մարիամ, ասի, ձեն մի՜ տա, պապիկը թող հանգստանա»: Մարիամը ձեն տվեց, պապիկը չարթնացավ: Դու մի ասի քնի մեջ հոգին ավանդել էր: Հանգստացել էր հուրհավիտյան: Բա՜, արևո՜ւդ մեռնեմ,— տխուր երանությամբ եզրափակում էր մայրս:— Արդար մարդ էր իմ պապիկը: Աշխատեց, հաց վաստակեց մինչև խորին ծերություն: Աշխատանքի տեղումն էլ մեռավ: Հարյուր քսան տարեկան էր: Լույս դառնա իր հոգին:

Ես ծաղիկ էի հանել:

Մեր գյուղում չգիտեին ինչ բան է ծաղիկ ծեծել: Երեխաները առանց բացառության ծաղիկ էին հանում, ոմանք մեռնում էին, ոմանք մնում էին չեչոտ կամ կուրանում էին: Ես երեք փորձանքից էլ վերծ մնացի: Մայրս, տատս, հորքուր Ալմոն գիշեր-ցերեկ նստած գլխավերևումս՝ հոգում էին, որ ես ծաղկոտ այտերս չքորեմ ու չդառնամ չեչոտ:

Արդեն առողջացել էի, բայց ինձ հարկադրում էին առայժմ դեռ պառկած մնալ, մանավանդ որ ձմեռ էր և ես կարող էի մրսել ու հիվանդանալ:

Այդ օրը հայրս հոր էր բաց անում: Մեր գյուղում սովորություն կար հացահատիկը պահել բակում փորած հորի մեջ և պետք եղած դեպքում հորից հանել: Հայրս դրսում զբաղված էր հոր հանելով, տանեցիք էլ նրան օգնում էին: Ինձ խստիվ պատվիրեցին անկողնուց վեր չկենալ, մանավանդ բակ դուրս չգալ: Տանն ինձ հետ մնացել էին միայն փոքր քույրերս՝ Հայկանուշը, որ նոր էր չորեքթաթ անում, և Սերիկը, որ քնած էր օրորոցում:

Դրսում ձյուն էր եկել, և օրը պայծառ էր: Արևի շողքը երդիկից ընկել էր ներս, ու շողքի մեջ խլվլում էին անթիվ մանր բաներ: Ես պառկած տեղից անհամբեր դիտում էի, թե այդ ինչեր են խլվլում արևի շողքում: Բայց ամենից ավելի շատ ուզում էի տեսնել, թե ինչպես են մերոնք հոր հանում:

Այլևս չհամբերեցի, տեղից վեր կացա և շալկանց վազեցի դուրս: Դուռը բաց անելը ու ճչալս մեկ եղավ: Սպիտակ ձյան վրա ընկած արևը կարծես նիզակներ խրեց իմ աչքերի մեջ: Աշխարհը մթնեց: Ես երկու աչքով էլ կուրացել էի: Այն, ինչ անել չկարողացավ ծաղիկը, արևն արեց, ավելի ճիշտ՝ իմ անհամբեր և անհնազանդ բնավորությունը:

Ես կուրացա և շաբաթներով տառապում էի աչքերի անտանելի ցավից: Մայրս ինձ շալակն առած քայլում էր տան մի անկյունից մյուսը, հեքիաթներ և զանազան պատմություններ անում՝ աչքերիս ցավը մոռացնել տալու համար:

Մայրս կիսագրագետ էր և հակում ուներ պատմություններ ու ոտանավորներ սարքելու: Այդ օրերին նա սովորեցրեց ինձ հայոց այբուբենը և մինչև հարյուրը հաշվելը: Ամենից ավելի հաճախ նա երգում էր այն ոտանավորը, որ ինքն էր հորինել գուցե հենց այդ օրերին.

Ձմեռն էր և ձյունը գետին պատած էր,
Խեղճ գյուղային ամեն բանից կրկված էր,
Ոտաբոբիկ ձյունի մեջ փաթաթված էր,
Ոչ մի տեղից փրկության հույս նա չուներ:

**«Գյուղային»**—դա մորս հորինած բառն էր, որ նշանակում էր «գյուղացին»: Նա կարծում էր, թե դա է գեղացի բառի գրական ձևը: Այդ ոտանավորը 1896 թվականի ջարդին էր վերաբերում: Թուրքերի կողմից հայերի նկատմամբ գործադրված ազգասպանության այդ առաջին մեծ ալիքը հասել էր մինչև Խառակոնիս, և մայրս այդ մասին պատմելուց հետո անպայման երգում էր իր այդ ոտանավորը. «Ձմեռն էր և ձյունը գետին պատած էր...»

Հենց իմ աչքացավի այդ օրերին էլ մայրս ինձ




343-71
digitised by A.R.A.R.@

ասաց, որ ծնողներս իմ անունը Հայաստան դնելով, ուզեցել են ասել, որ հայ ազգը դեռ ազատության հույսեր ունի, և ես պետք է մեծանամ ու աշխատեմ արդարացնել այդ հույսերը:

Իմ աչքացավը հետզհետե անցավ, և աչքերս բացվեցին: Միայն ձախ աչքիս վրա աննշմարելի մի փառ էր մնացել, և այդ աչքով ես ավելի վատ էի տեսնում: Բայց արդեն առողջ էի, մորս շալակից իջել էի և հասակակիցներիս հետ տրտինգ էի տալիս փողոցում:

Աչքերս բաց արին իմ տատի սպեղանինե՞րը, թե՞ մորս պատմություններն ու երգերը: Երևի երկուսը միասին:

Մայրիկս, տատիկս և հորքուր Ալմոն շարունակում էին հարևանուհիների առաջ ինձանով պարծենալ.

— Մեր Հայերը հայպար խելքի տեր է:

Հայերը Հայաստանի կրճատված մտերմիկ ձևն էր:

Ճիշտն ասած՝ ես էլ էի համոզված, որ հայպար խելքի տեր եմ:

Գարունը բացվել էր, օրերը տաքացել էին: Գյուղամերձ այգիներից մենք ուռենու կանաչ ոստեր էինք բերում ու դրանցով զարդարում տան մրոտ պատերը: Կանաչ ուռենու ոստը ինչ-որ մի քաղցր կրակով այրում էր իմ սիրտը:

Մայրս հարևանուհիների մեջ խելացի կնոջ համբավ ուներ: Ուստի, միշտ նա էր ղեկավարում հանդից բրտին բերող կանանց խումբը: Բրտինը կարմրավուն մի կավահող էր, որ մեր գյուղացի կանայք հանդից բերում և դրանով փոքր ու մեծ պնակներ, կճուճներ ու պուտուկներ էին պատրաստում:

— Խուռի՛կ ջան,—իրենց բակից կանչեց մեր հարևանուհի Շամամը, մորս ամենամոտիկ ընկերուհին,— վաղը գնա՞նք բրտին բերելու:

— Գնա՛նք,— համաձայնեց մայրս:

Մյուս առավոտ մեր թաղի կանայք մորս գլխավորությամբ շարժվեցին դեպի հանդ: Ես ընկա հետևներից: Կանայք մորս պատվի համար համակերպվեցին իմ ներկայությանը և չսխալվեցին: Գյուղից այնքան դեռ չէինք հեռացել, երբ ես բացականչեցի.

— Մա՛ղ չեք վերցրել հետներդ, մա՛ղ: Առանց մաղի բրտինը ո՞նց պիտի մաղեք:

Կանայք զարմացած իրար նայեցին: Իսկապես ոչ ոք մաղ չէր վերցրել: Սկսեցին հերթով իմ թշերը պաչել:

— Խուռի՛կ, լաճդ հայպար խելքի տեր է:

Այդ օրը նորից հաստատվեց իմ համոզմունքը, որ իմ մայրը գյուղի ամենախելացի կինն է, ես՝ ամենախելոք տղան:

Տուն վերադառնալուց հետո ես հիվանդացա, մի քանի օր պառկեցի և կորցրի աշխուժությունս: Մայրս համոզված էր, որ կանայք ինձ աչքով են տվել, և վզիցս կախեց կապույտ ու խոշոր մի հուլունք:

Ես արդեն չորս տարեկան էի:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

5510-Ա.հ.

digitised by A.R.A.R.@

# ՎԵՐԱԴԱՐՁԻՐ ՆՐԱ ՄՈՏ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Մայրը գոռաց նրա վրա.

— Քեզ քանի՞ անգամ ասել եմ՝ գրելու ժամանակ մեջքդ ուղիղ պահիր:

Տղան շատ վիրավորվեց, նույնիսկ աչքերը լցվեցին: Ինքը հասկանում էր, որ մայրը ուրիշի վրա է բարկացած: Հեռախոսային ծանր խոսակցություն ունեցավ թատրոնի դիրեկտորի հետ, չէր ուզում խաղալ մի դեր, բայց պարտադրեցին:

— Դասի գնալուց առաջ կլվանաս ամանները:

Ուրիշ անգամ ինքն այդ անում էր առանց մոր ասելու, իսկ ասելու դեպքում մայրը, համենայն դեպս, կոպիտ չէր լինում: Այս անգամ տղան ստորացված զգաց և չհամբերեց.

— Ի՛նքդ լվա:— Ու մի տեսակ վատ զգաց ինքն իր հանդգնությունից, հասկացավ, որ եթե այդպես շարունակի, մորը մեծ վիշտ կպատճառի և տունը անտանելի կլինի: Ու որոշեց իրեն զսպել, մինչև վերջ զսպել:

Մայրն ապտակեց... իսկ նա լռեց:

Մայր ու տղա համարյա միաժամանակ մտածեցին. եթե հայրը լիներ, նա պիտի պատժեր այդ հանդգնության համար և մայրը մի կերպ պիտի պաշտպաներ, ասելով, որ «երեխան ասաց, բայց տեղնուտեղը զղջաց» կամ՝ «երևի դա դրսից լսած խոսք էր, որ դուրս սպրդեց լեզվի տակից, և դրա համար բոլորովին կարիք չկար այդքան դաժան պատժելու»:

Չորս-հինգ օր հազիվ երկու խոսք փոխանակեցին. տանը գոյություն ունեին հաստատված սովորություններ, և խոսելու կարիքը չէր զգացվում: Հետո խոսեցին, բայց անգույն, անարտահայտիչ: Մայրը փորձերից գալիս էր անտրամադիր, և ինքը առհասարակ դադարել էր նրան ուղեկցելուց: Փոքր ժամանակ իրեն ծեծել էին

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



և՛ մայրը, և՛ ուրիշները, բայց այն ժամանակ ուրիշ էր: Հիմա նա ծեծն ու վիրավորանքն զգում էր այլ կերպ:

Օրեր անցան և կարծես թե՝ հաշտվեցին: Իրար հանդեպ հոգատար էին, բայց առաջվա ջերմությունը չկար, թեև երկուսն էլ ուզում էին իրենք իրենց համոզել, որ իրենց կյանքը լավ է ընթանում:

Հակառակ շուտ մեծանալու ցանկությանը, նա միաժամանակ փոքրանալու անորոշ մղում ուներ՝ մորը առաջվա պես, անվերապահորեն լավ ու կատարյալ զգալու համար: Ու երևի այդ էր պատճառը, որ կիրակի ցերեկը նա գնաց թատրոն՝ տեսնելու «Երկու թխկենի» հեքիաթ-պիեսի ներկայացումը: Ներկայացումից առաջ և ընդմիջումներին նրան հետաքրքրում էին հանդիսատեսները, որոնք թատրոն էին եկել ամբողջ ընտանիքով կամ, ավելի ճիշտ, ընտանիքի ամբողջության տպավորություն էին թողնում: Ի՞նչն էր, որ նրան տխրություն էր պատճառում, ընկճում: Ներկայացման ժամանակ, դահլիճի խավարի մեջ իրեն լավ էր զգում և շատ եղբայրներ, քույրեր, ազգականներ, բարեկամներ ունենալու պատրանքը ուներ, որովհետև միաժամանակ էին հուզվում, երբեմն ծիծաղում էին միանման և լույսը վառվելու առաջին պահերին իրար էին նայում լավ ծանոթների նման: Բայց շուտ էր անցնում երանելի մասսայական հիպնոզը, ամեն մեկը վերադառնում էր իր սովորականին: Այդ վերադարձը հաճելի չէր նրան, թեպետ գիտեր նաև, որ անհեթեթ է դրա հետ չհաշտվելը: Նա չէր տրվում հեքիաթ-ներկայացման հրապույրին, որովհետև փո՛քր չէր արդեն, նաև որովհետև մեծ էլ չէր, որ կարողանար ամեն դեպքում գեղեցիկը տեսնել:

— Քիչ է ասել, որ սիրում եմ ինքս ինձ,— պառավ կախարդը Վասիլիսային էր ասում, ձայնի չարությունը շեշտված էր: Մայրն էր այդ դերում: Նա տանը չարացած ժամանակ այնքան տհաճ չէր լինում: Բեմից մայրը համաձայն էր, որ գարշեն իրենից:

— Դուք մտահոգվում եք ձեր բոլոր հարազատների հոգսերով, իսկ իմ մտահոգությունը միայն ես եմ:

Ինքը՝ տղան, երբ հիվանդանում էր, մայրն անհանգստանում էր: Ուշանում էր, մայրն անհանգստանում էր: Վիրավորվում, լաց էր լինում, մայրն անհանգստանում էր: Իսկ սա միայն դեր է, նույնիսկ ստիպողական, տղան պետք է հասկանա:

— ... Սրան թալանիր, նրան ծեծիր, մյուսին անտեղի պատժիր...— շարունակում էր կախարդը:

digitised by A.R.A.R.@

*Պատահել է, որ մայրն անտեղի պատժել է իրեն: Ինչպես վերջին անգամ: Մոր հետ մի ինչ-որ լուրջ բան էր կատարվում, ինքը պարտավոր էր հասկանալ: Մայրը հասկանում էր նրան, երբ տղան դեռ փոքր էր, չէր կարողանում բացատրել: Մայրը հասկանում էր ինքնաբերաբար, առանց ջանքի: Իսկ ինքը նրան հասկանալու համար պետք է ջանք թափեր:*

*Արջն ասում էր.*

*— Խիղճ չունես դու...*

*Կախարդը պատասխանում էր.*

*— Ճիշտ է, Միշա՛, չկա, չի՛ եղել... հա՛-հա՛-հա՛...*

*Ինքը տեղից կուզենար գոռալ՝ ճիշտ չէ, դու այդպիսին չես, մա՛... Գիտեր, որ իրարանցում կլինի, հանդիսատեսները չեն հասկանա, ղեկավարությունը կբարկանա և իրեն այլևս երկար ժամանակ չեն թողնի գալ երեկոյան ներկայացումներին, կպատժեն ուրիշներին էլ ու կծիծաղեն, առակի նյութ կդառնա:*

*Նա չմնաց երկրորդ, երրորդ գործողություններին: Կարդացել էր, գիտեր, թե հետո ինչ է լինում: Պառավ կախարդը Վասիլիսային պետք է ասեր. «Ինչպե՞ս է, որ երեխաները քեզ չեն ձանձրացրել... Ես նրանց լուսամուտից դուրս կշպրտեի»: Չէ, մայրը չէր կարմանում ուրիշ մայրերի համբերության վրա, բայց ինքը միշտ չէ, որ համբերող էր: Ինքը մորը մեղադրելու իրավունք չունի, որովհետև եղել է մեղավոր, շատ անգամ: «Ես տանել չեմ կարողանում, երբ մարդիկ ուրախանում են»,— կասի կախարդը: Հավանաբար դժվար է բարի լինելը, երբ բախտը չար է քեզ հետ: Ինքը փախել է թատրոնից, որպեսզի ցրի իր վատ տրամադրությունը, և կցրի, որովհետև հավատում է, որ դեռ բախտավոր կլինի: Իսկ մայրը... Նա կուզասենյակում մենակ է: Մենակ չպետք է թողնել նրան: Պետք է վերադառնալ նրա մոտ: Վերադարձիր նրա մոտ:*

*Ու տղան վերադարձավ:*

# ԱՐԱԳԻԼԸ

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Արագիլն եմ,
Արագիլն եմ,
Ես Գարունի օրագիրն եմ,
Առաջին Գ նրա գիրն եմ,
Որ գրում եմ ինքս ինձանով,
Երբ կանգնում եմ իմ մի ոտիս
Ու մի թևով բռնում գոտիս:
Արագիլն եմ,
Արագիլն եմ,
Ես սպիտակ-սպիտակ եմ,
Բայց Գարունի սևագիրն եմ,
Երբ ձեզ մոտ եմ՝ մի թռչուն եմ,
Որ գարուն է միշտ ձեզ բերում:
Երբ ձեզ մոտ չեմ՝ թևեր չունեմ
Ու չեմ թռչում ես ամպերում,
Երբ ձեզ մոտ չեմ՝ ճիշտ ձեզ պես էլ
Երկու ձեռքով մարդ եմ ես էլ:
Աշխատում եմ ամբողջ աշուն,
Ձեզնից էլ շա՛տ, ձեզնից էլ շո՛ւտ:
Աշխատում եմ ամբողջ ձմեռ...
Ձեր գործից շատ է գործը մեր
Ու մեր բեռը՝ այնքա՛ն ծանրը,
Որ թվում է ձեռքը մանրը:
Երբ հասնում է Գարունը տաք,
Արեգակն է վերից շողում,
Ու բացվում է սառույցը փակ,
Քիչ է մնում փափկած հողում
Խրվենք գնանք մինչև հատակ,
Դրա համար առնում թևեր,
Հողից պոկվում, թռչում ենք վեր,
Ու գալիս ենք աշխարհը ձեր,
Ուր ձեր բեռը թեթև է դեռ,
Եվ ձեր բեռան ծանրության տակ
Դեռ չեք գնում դեպի հատակ:
Արագիլն եմ,
Արագիլն եմ,
Ձեր փրկության հեռագիրն եմ:
Դուք մի հարցրեք սրան-նրան,
Թե ինչո՞ւ եմ ես միշտ կանգնում
Ոչ թե երկու ոտի վրա,
Այլ մի ոտի:
Ով չգիտի
Թող հիմա նա
Լավ իմանա.
Ես կանգնում եմ միշտ մի ոտի,
Որ դրանով թեթևանա
Ձեր աշխարհի ծանրը բեռը,
Որ ձեր հողն էլ, ինչպես մերը,
Շատ չփափկի ձեր բեռան տակ,
Ու չխրվեք մինչև հատակ
Կամ ստիպված առնեք թևեր,
Ձեր հին բույնը թողնեք ավեր...
Արագիլն եմ,
Արագիլն եմ,
Իմ աշխարհի տարագիրն եմ...

digitised by A.R.A.R.@




# ՄԱՅՐԱԿԱՆ ԱՆԵԾՔ

*ԱՆԳԵԼ ԿԱՐԱԼԻՅՉԵՎ (բուլղար գրող)*

— Երբե՛ք չմոռանաս հայրենիքդ,— շշնջաց մահամերձը:

— Ինչ ասացի՞ք, տե՛ր իմ,— մահճին խոնարհվեց նրա հավատարիմ ծառան:

— Հիշի՛ր,— ցամաքած շուրթերը շարժեց մահամերձը,—որ այս աշխարհում դու հայրենիք ունես ու մայր: Վա՜յ նրան, ով չի ունկնդրի մայրական ձայնին:

Ծեր տիրակալի փոս ընկած աչքերը արցունքներով լցվեցին: Երկու խոշոր կաթիլներ փայլփլելով գլորվեցին այտերն ի վար: Մեռնում էր ահեղ ու հզոր Բաբելոնի տիրակալը, մեռնում էր՝ հոգին լեցուն անամոք ցավով: Մեռնում էր նա՝ վերջին անգամ մտովի տեսնելով հայրենի հողը: Այնտեղ լայնարձակ դաշտերն էին կանաչին տալիս, լսվում էր մարգագետնում արածող խոյերի զանգակների կարկաչը, հանդարտ ծփում էր այնտեղ լայնահուն գետը, որի ջրերի մեջ, անօգնական խոնարհած իրենց ճյուղերը, նայում էին ուռենիները տխուր: Կարմիր պոչիկներով խլվլան ձկնիկները վերուվար էին անում, վետվետում էին անդորր ջրերը:

Ավա՜ղ, այդ թավիշ դաշտը, որի վրայով, պարանոցները մեկնած թռչում են արագիլները —հայրենի Թրա՜կիան է: Գետը, որի ափերին օրորվում են արծաթաշող ուռիները—Մարիցա՜ն է: Իսկ հովիվները, որ այդպես սրտալի նվագում, խոսեցնում են իրենց սրինգները, հարազատ եղբայրնե՜րն են նրա՝ Բաբելոնի արքայի:

— Ո՞ւր են իմ եղբայրները: Ո՞ւր է մայրս...

Եվ նրա հայացքի առջևով, քարավանների պես, գալիս են ու անցնում ջահելության տարիները: Տեսնում է նա հարազատներին, սիրելի, սրտամոտ դեմքեր: Կանգնած են նրանք իր դիմաց՝ հայացքներում հանդիմանանք, որովհետև ինքը մոռացավ նրանց, երբ բազմեց արքայական գահին, երբ բյուր ու բազում մարդիկ սկսեցին խոնարհվել նրա առաջ:

Հիշեց մահամերձը, թե ինչպես մի անգամ, երբ իրենց կողմերով, զոր ու զորքն առած՝ դեպի Արևելք էր անցնում Ալեքսանդր Մակեդոնացին, նա ինքն էլ թողեց հայրենի գյուղը ու միացավ նրանց: Հիշեց աշնանային կարճ օրը, երբ նա նժույգ նստեց ու ճանապարհ ընկավ մեծն Ալեքսանդրի զորքերի հետ: Թրակիայի դաշտերը դեղնին էին տալիս, ծառերի վրա խըշշում էին չոր տերևները, իսկ արևը, արցունքով լեցուն աչքի նման, խամրած նայում էր հոդին և էլ զորություն չուներ ջերմացնելու այն: Մի պառավ ցավից շուրթերը սեղմած, բռնել էր նրա նժույգի սանձը և աղերսում էր.

— Կա՜ց, որդյա՜կս, կաց, գոնե մի՜ քիչ էլ նայեմ անուշ դեմքիդ: Սիրտս վկայում է, որ քեզ այլևս չեմ տեսնելու...

Այդ պառավը նրա մայրն էր: Բաբելոնի տերը թառանչ արձակեց: Եվ նորից նոր պատկերներ հայտնվեցին նրա աչքերի առաջ...

Լսվում է սմբակների ծանր դոփյուն: Խրխնջում են հոգնած նժույգները, արևի տակ փայլում են սաղավարտները: Մակեդոնիայի արքայի զորքն է անց կենում անապատի շիկացած ավազներով, շոգից շնչահեղձ: Եվ ահա հեռվում երևում են պարիսպները փառապանծ Բաբելոնի: Հրաշալի լույսով ողողված է ողջ քաղաքը: Հանդարտ հոսում է գետը՝ ափերին ծաղկուն պարտեզներ ու ճերմակ տներ, որոնք նստած կարապներ են թվում:

Եվ ահա որոտաց Ալեքսանդր Մակեդոնացու ամպրոպային ձայնը: Մեծ զորավարը դիմեց իր զորքերին:

— Այս քաղաքը,— ասաց Վալ,— նման է կախարդական գանձարանի: Այստեղի հմուտ վարպետները սուրուլիկ սրեր են կոփում, որոնք գալարվում են օձերի նման, և անգին քարերով դրվագում են դաստապանները դրանց: Այստեղ ծով է հարստությունը: Եվ այս քաղաքը ես կնըվիրեմ այն զորականին, ով առաջինը ճեղքի թշնամու նետի տարափը ու կարողանա բարձրանալ բերդապարսպի վրա:— Լեգեոններն աղմկեցին, ինչպես ծովը: Սկսվեց ահեղ մարտը: Որոտում էին պաշարողական մեքենաները: Մարտկոցները կըրակ էին ցայտում, բաբաները վիթխարի քարերով հարվածում էին պարիսպներին: Քաղաքը պարուրվել էր ծխի ամպերով:

Բարձրաբերձ պարիսպն առաջինը մագլցեց թրակիացի մի երիտասարդ, եկած Մարիցա գետի առափնյա մի գյուղից: Երեք օր հետո նա Ալեքսանդր Մակեդո-



digitised by A.R.A.R.@

նացուց ստացավ Բաբելոնի տիրակալի սուրը:

Թրակիացին նստեց Բաբելոնի տերության գահին և իշխեց ինը տարի: Նա վերականգնեց կործանված պարիսպները, զորեղ բանակ ստեղծեց, ընդարձակեց տերության սահմանները: Նա լողում էր ոսկու և շքեղության մեջ:

Մի անգամ նրա պալատը եկավ մի օտարական: Եկվորը գլխին ուներ ոչխարի մորթուց սրածայր փափախ, ոտքերին՝ պոստոլներ, իսկ մեջքին՝ կարմիր գոտի: Հեռուներից էր եկել նա, և նրա դեմքը խանձված էր անապատի շոգ շնչից:

— Սիրելի՛ ավագ եղբայր,— ասաց աղքատ հյուրը Բաբելոնի տիրակալին,— ես քո կրտսեր եղբայրն եմ: Ինձ չե՞ս ճանաչում: Եկել եմ Թրակիայից: Ինձ ասացին, թե դու մեծ մարդ ես դարձել, թե այնքան քաջարի ռազմիկներ ունես, որքան ավազ կա անապատում: Եվ ահա իմ հայրենակիցները ինձ ուղարկեցին քեզ մոտ, որ օգնություն խնդրեմ: Հյուսիսի բարբարոսները, գազանի մորթի հագած, զինված կացիններով ու կարճ սրերով, ներխուժել են մեր երկիրը: Նրանք հափշտակում են մեր նախիրները, այրում են մեր արտերը, առևանգում մեր կանանց: Օգնությու՞ն հասիր մեզ:

— Ես ձեզ օգնել չեմ կարող,— մերժեց տիրակալը նրա խնդրանքը:— Իմ ռազմիկները սովոր են կռվել միայն այն ժամանակ, երբ նստած են լինում մարտական փղերին: Անապատներ ու ծովեր են բաժանում Թրակիան Բաբելոնից: Ես փղերն ինչպե՞ս անցկացնեմ ծովով:

Գլխահակ ելավ պալատից թրակիացի հովիվը:

Ինը տարի ևս անցավ: Դարձյալ Բաբելոն եկավ նույն հովիվը և ծնկաչոք աղերսեց:

— Եղբա՛յր իմ,—ասաց նա,— մեռնում է մեր մայրը: Եկ հրաժե՛շտ տուր նրան: Նա կամենում է մեռնելուց առաջ գրկել քեզ՝ իր ավագ որդուն, Բաբելոնի տիրակալին:

— Ես գալ չեմ կարող,—պատասխանեց տիրակալը,— որովհետև Բաբելոնը լի է մեծամեծերով, որոնք գրավել են տենչում իմ արքայական գահը: Հենց որ գահից վեր կենամ, ուրիշները կբազմեն վրան:

Կրտսեր եղբայրը գլուխը կախեց, հեռացավ, երդվելով, որ այլևս ոտք չի դնի այդ քաղաքը: Իսկ երբ Թրակիա վերադարձավ, ամեն ինչ պատմեց մորը: Լսեց մայրը դառնացած սրտով, նստեց մահվան մահճի մեջ, հայացքը հառեց անորոշ հեռուն և անեծք հղեց առ ավագ որդին.

— Թե երբևէ, որդի՛ս, հայրենի հողը քեզ քաշի և դու Թրակիա վերադառնաս, թող որ քար դառնաս, քանի որ այդքան քար սիրտ ունես դու:

Բաբելոնում թագավորելով անցկացրեց կյանքը, պատերազմներ վարեց, արքաների հյուրընկալեց ու ճանապարհեց, հավաքեց ու դիզեց ոսկի ու արծաթ, և ահա վերջապես նրա մահվան ժամանակն էլ եկավ...

— Լսի՛ր,— դարձավ նա հավատարիմ ծառային,— լսի՛ր, թե ինչ եմ հրամայում... Այս գիշեր, երբ ես կմեռնեմ, գաղտնի կըբարձես վեց ուղտ թանկագին գանձերով: Յոթերորդի վրա կապել կտաս իմ դագաղը և կուղարկես Թրակիա: Ես թաղվել եմ ուզում հայրենի հողում...

— Լսում եմ, տե՛ր: Կատարված կլինի քո վերջին կամքը:

Հենց նույն գիշերը, երբ լուսինն անցավ ամպերի ետև, յոթ ծանրաբեռ ուղտեր դուրս ելան Բաբելոնի դարբասներից և ճամփա ընկան: Երկու ամիս նավելով գնացին, անցան օտար ու անծանոթ երկրների ափերով: Խաղաղ աշուն էր, երբ յոթ ուղտերը ոտք դրեցին Թրակիայի դաշտերի խամրող կանաչին: Մի ամբողջ ցերեկ քարավանն անցավ դաշտերի միջով, իսկ երեկոյան կանգ առան գիշերելու: Ուղտերը, երկար ճանապարհից ու ծարավից տառապած, ագահորեն խմում էին սառնորակ ջուրը: Շուտով մութն ընկավ, և հեռվում կայծկլտացին կրակները:

Քարավանապետը դագաղն իջեցրեց ու այսպես ասաց.

— Տե՛ր իմ, մենք հասանք: Սա քո հայրենիքն է:

Բայց հենց որ հողին դիպավ դագաղը, տեղնուտեղը քար դարձավ: Քարացան ուղտերն ու քարավանապետը: Մայրական անեծքն ի կատար ածվեց...

Այդ ժամանակից դարեր են անցել և հարթ դաշտի մեջ դեռ կանգնած են, կան յոթը բլուրներ: Պլովդիվ քաղաքն է տարածված հիմա այդ բլուրներին:

*Թարգմ. Հ. ՀԱՐՅԱՆԻ*

# ՀԱՐԲԱԾ ԿԱՏՈՒՆ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Կատուն խմեց մի թաս գինի,
Որ կերածը անուշ լինի:
Հետո էլի խմեց մի թաս,
Որ չմնա քեֆը պակաս:
Երկու թաս էլ վրան խմեց
Ու հատակին փռվեց քնեց:

Հանկարծ լսվեց աղմուկ ու ճիչ.
Մկներ եկան պատի միջից,
Գտան իսկույն տեղը նրա,
Պար բռնեցին մեջքի վրա,
Թել կապեցին բեղի ծայրին,
Գլխին կարմիր թասակ դրին,

— Ի՞նչ եք անում,— ասաց մի մուկ,—
Չլինի՞ թե գժվել եք դուք,
Բա որ հանկարծ աչքը բանա՞,
Չէ՞ որ քնած կատու է նա...—
Մկներն ասին.— Սխալ ես դու,
Երբ խմած է՝ էլ ի՞նչ կատու:



digitised by A.R.A.R.@

# ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՄՈՒՆԱՅԻ

100 տարի առաջ՝ 1871 թ. մարտի 18-ին, Փարիզի ապստամբած աշխատավորությունը տապալեց բուրժուական կարգերը և հաստատեց իր հեղափոխական իշխանությունը, որը Փարիզյան Կոմունա անունը ստացավ:

Կոմունան դեմոկրատական իշխանություն էր և ձգտում էր վերացնել շահագործման բոլոր ձևերը, աշխատավոր ժողովրդին տալ նրա երազած ազատություն, հավասարություն ու եղբայրություն:

Կոմունան երկար չապրեց, ընդամենը՝ 72 օր: Բարիկադներով ծածկված Փարիզում քաջարի կոմունարները օրհասական մարտեր էին մղում բուրժուական զորքերի դեմ:

Բայց ուժերն անհավասար էին: Մայիսի 28-ին Կոմունան ընկավ: Պեր-Լաշեզ գերեզմանատանը գնդակահարվեցին վերջին կոմունարները:

Կոմունան պարտվեց, բայց նրա դերը միջազգային բանվորական շարժման համար անգնահատելի եղավ: Եվ մարդիկ այսօր էլ երախտագիտությամբ են հիշում հերոս կոմունարներին ու նրանց գործը: Իսկ Փարիզի աշխատավորության սգո հանդիսավոր թափորն ամեն տարի Պեր-Լաշեզում ծաղկեպսակներ է դնում Կոմունարների հուշարձանի մոտ:

## ԲԱՐԻԿԱԴՆԵՐՈՒՄ

ՎԻԿՏՈՐ ՀՅՈՒԳՈ

*Քաջաբար կռվող կոմունարների*
*Արյունով ներկված բարիկադներում՝*
*Բիրտ զինվորները վերցրին գերի*
*Նաև մի տղա՝ տասներկու տարու:*
*— Է՜յ,— գոռաց սպան,— սատանայի՛ ճուտ,—*
*Նրանցի՞ց ես, ի՞նչ է:*

*— Այո՛, ես էլ եմ. միասին էինք:*
*— Լա՛վ,— փնչաց սպան,— սպասիր քիչ էլ՝*
*Քեզ էլ նրանց հետ կուղարկեմ... երկինք...*
*Ու պայթեց դաժան մի խուլ համազարկ:*
*Եվ տղան տեսավ, թե ինչպես անկար*
*Իր ընկերները կանգնած պատի տակ՝*



## ՄԱՐՄԱՐԻԿԸ

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Մարմարիկը նոր մամուռ է
Կապում կանաչ ծամին,
Սարից գարնան բույր է բերում
Իրիկնային քամին:

Մեղմ շրջում են թուփ ու ծաղիկ,
Վարսը հովին տված,
Ջրթոնքի մեջ այս անտառի
Կա մի խորունկ նվագ:

Ես չգիտեմ, Մարմարիկը
Ի՞նչ երգեր է երգում.
Միայն գիտեմ, որ ափերը
Կանաչով է ներկում:

Բայց չկարծե՛ք մի ներկ ունի
Գետակը մեր գյուղի.
Շուտով քանի՜-քանի՜ գույներ
Կտա նա մայր հողին:

Որ մանուկներն ամռանը զով
Իր ափերին շրջեն,
Այգաբացի շողերի հետ
Վառ ծաղիկներ փնջեն:

Սարից գարնան բույր է բերում
Իրիկնային քամին,
Ու գետակն իմ նոր մամուռ է
Կապում կանաչ ծամին:

digitised by A.R.A.R.@

# 100-ԱՄՅԱԿԸ

*Հնձվող խոտի պես դիտապաստ ընկան:*
*Ողջ մարմնով դողաց*
*Գունատված տղան:*
*Բայց մոտենալով մռայլ սպային՝*
*Սկսեց այսպես.*
*— Պարո՛ն կապիտան,*
*Թույլ տվեք, որ ես*
*Մորս իմ վերջին հրաժեշտը տամ*
*Ու ետ գամ էլի:*
*— Իսկ ո՞վ կստիպի, որ ետ գաս էլի:*
*Ծլկե՞լ ես ուզում, խաբեբա՛ լակոտ:*
*— Օ՛, ոչ, կապիտա՛ն. ես խոսք եմ տալիս:*
*— Իսկ ձեր տունն ո՞ւր է:*
*— Շատրվանի մոտ:*
*—Շա՛տ լավ, դե գնա՛:—*
*Ու տղան գնաց:*
*Նրա ետևից զինվորները բիրտ*
*Սուր քրքջացին.*
*— Է՜խ, է՜խ, կապիտա՛ն...*
*— Ա՛յ թե պուկ տվեց...*
*— Ա՛յ թե լավ խաբեց էդ ճուտը օձի...—*
*Եվ զինվորների քրքիջը խառնվեց...*
*Պատի տակ մեռնող խումբ հռնդոցին...*



Փարիզի բանվորները թնդանոթներ են տեղափոխում:

*Բայց այդ քրքիջը կտրվեց հանկարծ,*
*Երբ տղան վազեց, կանգնեց պատի տակ*
*Ու գոչեց նրանց համարձակ ու սեգ.*
*— Պարո՛ն կապիտան,*
*Պատրա՛ստ եմ ահա, դե՛, կրակեցե՛ք...*

Թարգմ. Ս. ՏԱՐՈՆՑԻ




## ԶԱՐՄԱՆԱԼԻ «5»-Ը

ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Ռուսաց լեզվի գրավորի դաս է: Ուսուցչուհին՝ Ելենա Կարպովնան, թելադրում է: Բոլորը գրում են: Ես արտագրում եմ Հայկից...

Ես նստում եմ Հայկի կողքին ու միշտ արտագրում եմ նրանից. Հայկը «5»-եր է ստանում, ես՝ «3»-ներ: Բանավոր դասերը պատասխանելիս ինձ հուշում է Հայկը, ու դարձյալ «3»-ներ եմ ստանում, իսկ Հայկը՝ «նկատողություններ»...

«4»-ը հազվագյուտ թվանշան է ինձ համար, իսկ «5»-ը այնքան դժվար բան, ինչպես... Մարս կամ Վեներա թռչելը: Չէ՛, չէ՛, չափազանցրի: Եթե ուզենամ «5» ստանալ՝ կստանամ: Ա՛յ, Հայկը ուզում է ստանալ և ստանում է: Ինձ էլ միշտ ասում է՝ դու էլ կարող ես ստանալ, եթե ուզենաս: Պետք է միայն ներշնչեմ ինքս ինձ, որ ամենամեծ հաճույքը պարապելն է: Դե՛, ես ինչպե՞ս այդպիսի բան ներշնչեմ ինձ, երբ ինձ համար ամենամեծ հաճույքը՝ ֆուտբոլն է, կինոն... Հայկն ասում է՝ հաճույքը դժվարությունների մեջ է: Դրան էլ չեմ հավատում: Ինչի՞ս է պետք, թե $(a-b)^3$-ը ինչի է հավասար. $a^3$-ից հետո «պլյուս» $3a^2b$, թե՞ «մինուս»: Կամ՝ «վարդ» բառը ինչպես է գրվում, վերջում թ-ը, թե՞ դ-ը: Ես ո՛չ հայոց լեզվի դասատու եմ դառնալու, ո՛չ մաթեմատիկոս: Ես, շատ-շատ, ֆուտբոլիստ դառնամ: Այնպիսի գնդակներ եմ խփում, որ անունս դրել են Ֆուտբոլիստ, և հեշտությամբ եմ խփ-



digitised by A.R.A.R.@

փում այդ գնդակները՝ իրեն-իրեն ստացվում է... Ա՛յ, եթե այնպիսի ապարատ լիներ, որ կոճակը սեղմեի ու առարկաներն էլ իրենք-իրենց լցվեին գլխիս մեջ, պարապելուց ես էլ հաճույք կստանայի: Թե չէ...

«И наконец в конце июля экзамены кончились»,— թելադրում է Ելենա Կարպովնան:

Արագ-արագ արտագրում եմ նախադասությունը: Աշխատում եմ ուշադիր լինել, ուզում եմ մի անգամ գոնե «4» ստանալ: Ամենից շատ սխալներ ռուսաց գրավորներից եմ անում. «а»-երն ու «о»-երը, «и»-երն ու «ы»-ները, «ь»-երն ու «ъ»-ները բոլորը խառնում եմ իրար:

Ինքս ինձ մտածում եմ. «Ախր չէին կարո՞ղ այնպիսի լեզու ստեղծել, որ ինչպես կարդում ես, այնպես էլ գրես: Չէ, պիտի կարդաս՝ «в канце», գրես՝ «в конце»: Հայերենն էլ նույնն է»...

Անգլերենի մասին չեմ էլ ուզում մտածել: Նայում եմ շուրջս՝ աջ-ձախ, բացի Հայկից և Նունիկից, բոլորն էլ իմ օրին են՝ թաքուն-թաքուն արտագրում են իրարից: Եվ մեկը քիթն է թանաքոտում, մեկը՝ այտը, մյուսը գրչածայրը քսում է ականջին...

— Ինչո՞վ ես զբաղված,— ընդհատում է թելադրելն ու ինձ է դիմում Ելենա Կարպովնան:

Քիչ է մնում ասեմ, թե ինչով եմ զբաղված, բայց լավ գիտեմ, որ անկեղծությունս երբեք չի գնահատվել, որ եթե ասեմ, ինձ նորից կանվանեն ծույլերի թագավոր և հակամանկավարժական տեսակետներիս համար դեռ ծնող էլ կարող են կանչել, ու լռում եմ:

— Նայիր գրածի՛դ,— կայրանում է Ելենա Կարպովնան:

Նայում եմ, բայց ոչ թե իմ գրածին, այլ՝ Հայկի...

Ելենա Կարպովնան շարունակում է ընդհատված թելադրությունը.

— «Хорошо было летом во время каникул...»

Հայկը գրում է: Ես արտագրում եմ նրանից ու մտածում. «Դե, իհարկե, ամառն ու արձակուրդը հիանալի բաներ են»...

Թելադրությունը վերջանում է: Դասարանի ավագը տետրերը հավաքում է, դարսում սեղանին: Ելենա Կարպովնան մի հայացք է նետում ժամացույցին և սկսում ուղղել մեր սխալները: Մենք բոլորս նայում ենք նրա գրչածայրին, պարզ երևում է, որ նա դժգոհ է մեր գրավորներից ու գրիչն ավելի հաճախակի է թաթախում կարմիր թանաքի մեջ:

Վերջապես հերթը հասնում է իմ տետրին: Գրիչը սահում է աջ-ձախ, բայց ոչ մի ուղղում: Ելենա Կարպովնան շրջում է էջը: Գրիչը դարձյալ առանց խազմըզելու սահում է տետրիս վրայով՝ աջ-ձախ, ու վերջում՝ «5»:. Աչքերիս չեմ հավատում: Թեքվում եմ առաջ. այո՛, «5»: Թեքվում եմ աջ-ձախ. բոլորը աչքները չռել են վրաս...

— Կանգնի՛ր,— հրամայում է Ելենա Կարպովնան:

Կանգնում եմ:

— Հայկի՞ց ես արտագրել,— հարցնում է:

— Ո՛չ,— պատասխանում եմ:

— Նստի՛ր:

Նստում եմ: Ելենա Կարպովնան զննում է ինձ, իսկ ես վիրավորված տեսք եմ ընդունում ու մենախոսում եմ մտքումս. «Կանգնի՛ր, նստի՛ր: Այն ժամանակ, որ «3-»ներ էի ստանում, չէր հարցնում՝ ումի՞ց ես արտագրել. հիմա մի անգամ ուշադիր արտագրեցինք՝ կանգնի՛ր, նստի՛ր»...— Եվ քմծիծաղ եմ տալիս:

Ելենա Կարպովնան կարծես կռահում է մտքերս, նույնպես քմծիծաղ է տալիս ու բաց է անում Հայկի տետրը: Գրիչը սահում է աջ-ձախ: Մեր հայացքներն էլ սահում են աջ-ձախ: Գրիչը սահում է հաջորդ էջի վրայով, և... դասարանը ոտքի է ելնում... Ելենա Կարպովնան գրիչը թաթախում է կարմիր թանաքի մեջ, ուղղում է կատարում ու «4» է նշանակում Հայկին. Հայկին՝ «4», ինձ՝ «5»:

Բոլորը նստում են՝ պարմացած, բացի ինձանից, ես շատ անտարբեր եմ նստում, որովհետև կռահում եմ, թե դա ինչպես է եղել...

— Կանգնի՛ր,— նորից հրամայում է Ելենա Կարպովնան:

Նորից կանգնում եմ:

— Ճիշտ ասա. ումի՞ց ես արտագրել:

— Ճիշտ եմ ասում. ոչ ոքից,— ստում եմ ես:

— Հապա ինչպե՞ս է պատահել, որ ոչ մի սխալ չես արել:

— Շատ գիտե՞մ,— ասում եմ,— պատահել է, էլի:

— Նստի՛ր:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԻՐԱՎՅԱՆԻ





digitised by A.R.A.R.@

Նստում եմ: Նստում եմ ու նորից մենախոսում եմ մտքումս. «Ա՜յ քեզ կարմանալի «5»... Ուրեմն, Հայկը «хорошо» բառը գրել է «а»-յով՝ «харошо», ես սխալ եմ արտագրել ու ինձ մոտ ստացվել է ճիշտ՝ «хорошо», և՝ «5»...

Հետո նայում եմ աջ-ձախ՝ կարմացած դեմքերին. այնպես են աչքերը չռել վրաս, կարծես թե ես իրավունք չունեմ մի անգամ գոնե «5» ստանալու: Մինչդեռ Հայկի դեմքի վրա ոչ մի կարմանք չկա, այլ՝ ուրախություն: Դե պարզ է. Հայկը ուրախացել է ոչ թե իր «4»-ի, այլ իմ «5»-ի համար: Ու ես էլ սկսում եմ կայրանալ. «Փոխանակ Հայկը կարմանա, որ ես իրենից արտագրել եմ, «5» ստացել, իսկ ինքը՝ «4», մնացածներն են կարմացել»...

Քիչ է մնում Ելենա Կարպովնային խոստովանեմ, որ արտագրել եմ Հայկից: Բայց կարմացական հայացքները գրգռում են ինձ. կայրույթիս խառնվում է նաև վիրավորանքի զգացումը, ու որոշում եմ ոչինչ էլ չասել: Մտածում եմ այսպես. «Թող իմանան, որ դա իմ արդար «5»-ն է, ու տրաքվեն»...

Բայց Հայկի համար խիղճս տանջում է:

Տուն գնալիս խիղճս ավելի է տանջում. զգում եմ, որ այնուամենայնիվ այդ արտագրած «5»-ը ինչ-որ ազդեցություն է գործել հակամանկավարժական տեսակետներիս վրա, ու մի տեսակ ուրախ չեմ այդ իմ ստացած «5»-ի համար: Նորից մենախոսում եմ. «Գուցե Հայկը ճի՞շտ է ասում, թե՝ հաճույքը դժվարությունների մեջ է... Բայց եթե այդպես է, ինչո՞ւ է հայրս երազում 30 կոպեկով մի քանի հազար շահել...

Հետո մտածում եմ այսպես. «Իսկ կարո՞ղ է պատահել, որ հայրս էլ չուրախանա, եթե հանկարծ շահի իր երազած «Վոլգան» կամ «Մոսկվիչը»...

Աստիճաններով բարձրանալիս գալիս եմ այն եզրակացության, որ շահած «Վոլգան» կամ «Մոսկվիչն» ու արտագրած «5»-ը տարբեր բաներ են...

Սեղմում եմ զանգի կոճակը: Մայրս դուռը բաց է անում. հայրս էլ է տանը: Նրանց չեմ ասում, որ «5» եմ ստացել...



Քնելուց առաջ մենախոսում եմ այսպես. «Եթե սխալ արտագրելով կարելի է «5» ստանալ, ինչո՞ւ չի կարելի «5» ստանալ՝ առանց արտագրելու»...

Հետո էլի շատ ու շատ բաներ եմ մենախոսում, որ ինչո՞ւ... ինչո՞ւ, ինչո՞ւ, ինչո՞ւ...

Եվ քնում եմ:



«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1970 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց երիտասարդ արձակագիր ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆԻՆ՝ «Ավարտվում է, արդյո՞ք, հերոսի կյանքը», «Ազատարար բանակի հետքերով» ակնարկների և «Թե ինչպես Հայաստանի լեռներում առաջին անգամ հնչեց «Ինտերնացիոնալ»-ը պատմվածքի համար։



«Կարկանդակը», «Սանրը», «Նկարիչ Արամը», «Անձրևը» ստեղծագործությունների նկարազարդման համար նկարիչ ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ արժանացավ 1970 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին։



digitised by A.R.A.R.@



Նկ. 1

# ԻՆՉ ԵՆ ՊԱՏՄՈՒՄ ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐԸ

ՀԱՍՄԻԿ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Հայաստանի հարուստ հնագիտական հուշարձանների շարքում առանձին հետաքրքրություն են ներկայացնում ժայռապատկերները, որոնք գտնվում են մեր լեռնային շրջաններում՝ ծովի մակերեվույթից մոտ 3000—4000 մ բարձրության վրա: Մեծարվեստ այդ պատկերները փորագրվել են քարե և, ավելի ուշ դարերում, մետաղե գործիքներով, հրաբխային ծագում ունեցող բազալտ քարերի վրա: Այդ քարերը կարծես ծածկված լինեն ձյութով, ունեն մուգ կապտավուն կամ մոխրագույն երանգ և արևի ճառագայթների ներքո ուժեղ փայլ են արձակում:

Ժայռապատկերների ուսումնասիրությունը լույս է սփռում Հայկական լեռնաշխարհում հազարամյակներ առաջ (6—1-ին հազ. մ.թ.ա.) ապրող ցեղերի կյանքի ու կենցաղի այլ և այլ կողմերի վրա: Դրանք մեզ պատմում են, որ մեր նախնիները զբաղվել են հողագործությամբ և անասնապահությամբ, եղել են քաջ որսորդներ, տիրապետել են բազմաթիվ արհեստների: Ժայռապատկերները հարուստ նյութեր են տալիս նաև մեր նախնիների կրոնական պաշտամունքների ու հավատալիքների մասին, որոնցից ավելի ուշ ժամանակներում (6-րդ դ. մ.թ.ա.) ձևավորվեցին հայ հեթանոսական կրոնն ու դիցաբանությունը:

Ժայռապատկերները առանձնապես շատ են ներկայացնում որսի տեսարաններ: Մարդիկ նախապես նկարում էին որսորդական գործողություններ, կոհված կենդանիներ, որպեսզի որսը հաջողությամբ պսակվի: Որսի ժամանակ օգտագործել են զենքերի մի շարք տեսակներ՝ բազմաձև նետ ու աղեղ, մահակներ, նիզակներ, պարաններ (նկ. 1, 2): Որսի էին գնում թե մենակ, թե խմբերով և դիմում էին կանայան խորամանկ միջոցների. աղմուկ-աղաղակով կենդանուն փախուստի էին մատնում, քշում դեպի նախապես պատրաստված որոգայթները՝ ցանցապատ թակարդները կամ ցանցը նետում էին շուրջկալված կենդանու վրա:

Հանդիպում ենք նաև հեծյալ որսորդների կերպարների:

Որսորդական այս հարուստ տեսարաններում ամենահետաքրքիրը գիշատիչ կենդանիների՝ առյուծի, ընձառյուծի և լեոպարդի առկայությունն է: Ինչպես երևում է, հնագույն ժամանակներում մեր նախնիները ընտելացրել են լեոպարդներին, շների հետ որսի տարել: Այդ մասին տեղեկություններ կան նույնիսկ հայ միջնադարյան աղբյուրներում:

Ժայռապատկերներ կան, որոնք ցուցադրում են նաև նախնադարյան փոխադրամիջոցների նմուշներ, սկսած ամենապրիմիտիվ քարշակներից մինչև կատարելության հասած երկանիվ և քառանիվ սայլերը՝ եզներ ու ձիեր լծած (նկ. 3):

Նախնադարյան մարդը իրեն



Նկ. 2



Նկ. 3



digitised by A.R.A.R.@

# ԻՆՉՈ՞Ւ Է ԼԱԼԻՍ ՎԱԶԸ

ՎԱՉԱԳԱՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Կիրակի առավոտ է, դեռ արևը նոր է քնից արթնացել և իր ոսկե բաճկոնը նոր է կոճկում: Մեր տանն արդեն կիրակնօրյա աշխատանքի բաժանում է կատարվել: Ինձ բաժին է ընկել խաղողի մատերի էտը:

Եվ ահա ես էտի մկրատն առած, իջնում եմ այգի, սկսում եմ աշխատանքը:

Քիչ հետո այգի է իջնում Արուսիկը, մոտենում է ինձ, նկատում է խաղողի վազի կտրտված մատերից կաթկթող արտասուքը:

— Պա՛, պա՛, պա՛ ջան, տե՛ս, ի՞նչ է լինում՝ կտրածդ մատերը լաց են լինում, արցունք է գալիս նրանց աչիկներից:

— Այո՛, լաց են լինում, աղջի՛կս:

— Բա ինչո՞ւ ես կտրում, ա՛յ պա, բա մեղք չե՞ն:

Ես աշխուժով դարձյալ շարունակում եմ կտրատել խաղողի ավելորդ ու չորացած մատերը: Բայց Արուսիկը հարցականի պես կախ է ընկել խաղողի ճյուղերից ու անվերջ, անհանգիստ հայացքով նորից ու նորից հարցնում է.

— Հը՞, պա՛, դե ասա՛ է, բա ինչո՞ւ ես կտրատում, որ լաց են լինում, բա մեղք չե՞ն, պա...

— Նրանք ուրախությունից են լաց լինում, աղջի՛կս,— պատասխանում եմ նրան,— որովհետև ամբողջ ձմեռ մնացել են ձյան տակ ու մրսել են, իսկ հիմա, որ արև է ու տաք, որ գարուն է ու էլ չեն մրսում, ուրախությունից հուզվել, արտասվում են: Բացի այդ ես ձմռան ցրտից ու ձյունից շատ մրսած, հիվանդացած մատերն եմ կտրում, վիրահատում եմ, որ մյուս մատերն էլ չհիվանդանան: Այդ մատերը խաղող չեն տալու և վուր տեղը, խաղող տվող մյուս մատերից կխլեն նրանց բաժին սնունդը՝ արևն ու ջուրը:

Արուսիկն իմ այս բացատրությունից հետո էլ վախեցած ու տխուր աչքերով շարունակում է նայել արտասվող վազերին: Այնուհետև այլևս խնամքով ու ափսոսանքով հավաքում է վազի նորաբողբոջ մատիկները և փաղաքշում դասդասում, որ չլինի թե անզգուշորեն նորից վիրավորի կամ ցավացնի առանց այն էլ վիրավորված լացող մատերը...

շրջապատող բնությունն ու բնության երևույթները դեռևս չըմբռնելով, կախման մեջ էր դրանցից ու լցված էր դրանց նկատմամբ երկյուղով, ուստի աստվածացնում ու պաշտում էր դրանք՝ աստղերով ու մոլորակներով ծածկված մութ երկինքը, արևն ու լուսինը, ամպրոպն ու կայծակը, մահն ու ծնունդը, պտղաբերությունը և այլն:

Պաշտամունք դարձած այս երեվույթները մարմնավորվել են կենդանական, մարդկային և երկրաչափական խորհրդանիշերով: Հետաքրքիր են ոտքերի ու ձեռքերի չոված վերջավորություններ ունեցող մարդկային կերպարները: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ դրանք կապվում են արևի պաշտամունքի հետ, այլ կերպ ասած՝ ներկայացնում են արևի աստվածություններ, որոնք միևնույն ժամանակ հանդիսացել են անասնապահությունն ու որսորդությունը հովանավորող աստվածություններ:



Նկ. 4



digitised by A.R.A.R.@

Լուսատուները մեծ մասամբ խորհրդանշվել են կանաչան կենդանիների կերպարանքով ու երկրաչափական նշաններով:

Կան կենդանիների կոհաբերության տեսարաններ, որոնք ուղեկցվում են ծիսական պարերով (նկ. 4): Այս կամ այն աստվածությանը կոհ մատուցելը նրան «սիրաշահելու» նպատակ էր հետապնդում: Օրինակ՝ հստակ պատկերված են կենդանիներին կենաց ծառերի մոտ կոհաբերության տանելու տեսարանները: Հայտնի է, որ կենաց ծառը խորհրդանշում էր պտղաբերությունը և նրա պաշտամունքը լայն տարածում ուներ նախնադարում:

Հաճախ ենք հանդիպում ամպրոպ-կայծակի աստվածության կերպարների՝ վիշապ-օձերի հետ մարտընչելիս կամ նրանցով շրջապատված: Այս դյուցազունները թերևս հայ հեթանոսական Վահագն աստծու նախակերպարն են հանդիսացել:

Այսպիսով, Հայաստանում տարածված այս ժայռապատկերները մեծ գաղափար են տալիս հնագույն այդ ժամանակներում այստեղ ապրող ցեղերի կենցաղի, կբաղմունքների, հոգևոր աշխարհի մասին, ծանոթացնում են Հայաստանի բուսական ու կենդանական հարուստ աշխարհին և, վերջապես, ապացուցում նրանց արվեստագիտական ընդունակությունները, շրջապատող բնությունը կգալու և այն հմտորեն վերարտադրելու կարողությունը:

Մեր նախնիների այս ունակությունների հոգևոր և նյութական մշակույթի ժառանգորդը դարձավ հայ ժողովուրդը, որը մինչև վերջերս էլ պահպանում էր դարերի խորքից եկող շատ սովորություններ, ծեսեր ու հավատալիքներ:



# ՄԱՐԴԸ, ԹԵ՞ ՆՐԱ ՏԻՏՂՈՍԸ

Ա. ԳՈՐԲՈՎՍԿԻ

Մտաբերենք Ռուսաստանի վերջին կայսեր տիտղոսը. «Մենք՝ կայսրս և ինքնակալս համայն Ռուսիայի, Մոսկվայի, Կիևի, Վլադիմիրի, Նովգորոդի, Թագավորս Կազանի, Թագավորս Աստրախանի, Թագավորս Լեհաստանի, Թագավորս Սիբիրի, Թագավորս Տավրիկյան Խերսոնեսի, Թագավորս Վրաստանի, Արքաս Պսկովի և մեծ իշխանս Սմոլենսկի, Լիտվայի, Վոլինսկի, Պոդոլսկի, Ֆինլանդիայի, իշխանս Էստլանդիայի...» և այլն:

Արքայական տիտղոսի պատմությունը՝ Մոսկովյան պետության տերիտորիայի ընդլայնման պատմությունն է: Մոսկովյան մեծ իշխանները գրաված կալվածքները իրենցին միավորելիս, վերցնում էին նաև այդ կալվածքների նախկին տերերի՝ իշխանների տիտղոսները: Այսպես, օրինակ, «Պսկովի արքա» տիտղոսը ասպարեզ եկավ 1510 թվականին՝ Պսկովի միավորումից հետո, «Սմոլենսկի մեծ իշխան» տիտղոսը՝ համապատասխան կերպով 1514 թվականին: Իր վրա առնելով այդ բոլոր իրավունքներն ու տիտղոսները, կայսրը կարծես թե իր մեջ միավորում էր բազմաթիվ անձանց: Այս պարագայում արդեն ուզած-չուզած «մենք» պետք է ասես:

Ամեն տեսակետից առատաձեռն լինելով իրենց անձի հանդեպ, տիրակալները սովորություն չունեին աչքաթող անել նաև տիտղոսները: Ահա, օրինակ, արևելյան միապետներից մեկի տիտղոսի մի մասը. «...Արքայից արքա, տիրակալ ամենազթառատ և ամենաերանելի, հույսը բոլոր ժողովուրդների և հզորագույնը երկրային բոլոր տիրակալներից, միակը, որի ոտքերը հանգչում են ժողովուրդների գլխին»...

Դժվար է իհարկե կռահել, որ այդ «հզորագույնը երկրային բոլոր տիրակալներից», որի «ոտքերը հանգչում են ժողովուրդների գլխին»... Բիրմայի թագավորության տիրակալն էր: Նրա ամբողջական տիտղոսի մեջ մտնում էր նաև այն, որ «բոլոր սպիտակ փղերի օրինական տեր ու տիրակալն էր»: Վերջինս, ամենայն հավանականությամբ, ավելի էր համապատասխանում իրականությանը:

Բոլոր ժամանակների միապետները շատ խնամքով հետևում էին, որպեսզի իրենց տիտղոսների մեջ բաց չթողնվի ոչ մի՛ բառ, ոչ մի ածական: 1766 թվականին ֆրանսիական պալատը Եկատերինա 2-ին ուղղած նամակներում «մեծություն» տիտղոսին հրաժարվում է ավելացնել «կայսերական» բառը, պատճառաբանելով, թե նման բառակապակցությունը, իբր, չի համապատասխանում ֆրանսերեն լեզվի կանոններին: Այդ հայտարարության վրա Եկատերինան դնում է հետևյալ արժանապատիվ մակագրությունը. «Ռուսաց լեզվի և արձանագրական կանոններին դեմ է առանց պատշաճ տիտղոսագրության հռովարտակի ընդունումը»:

Նամակներն առանց բացվելու ետ են ուղարկվում Փարիզ:

Միշտ չէ, սակայն, որ տիտղոսի հարցը եղել է անձնական սնափառության կամ գոռոզության հարց: Մենք գիտենք անցյալի շատ արժանավոր մարդկանց, որոնք նվաստացման ծանր պահեր են ապրել հենց այդ տիտղոսի բացակայության պատճառով: Դրանց թվում էր և Պուշկինը: «Մեր հասարակությունը,— տրտնջում էր բանաստեղծի ժամանակակիցը,— այնպես է կառուցված, որ ատիճան չունեցող մեծագույն արվեստագետը պաշտոնական շրջաններում վերջին գրագրից էլ ցած է դասվում»:

Զանազան տիտղոսակիրների մեջ Պուշկինը ձևականորեն ինչ-որ դիրքի հասավ այն ժամանակ միայն, երբ նրան շնորհվեց պալա-

digitised by A.R.A.R.@

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ 50-ԱՄՅԱԿԸ



*Պիոներնե՛ր.*

*Ձեզանից յուրաքանչյուրը թե՛ առանձին, թե՛ իր ջոկատի հետ պատրաստվում է արժանի նվերներով դիմավորելու իր մեծ տոնը՝ Սովետական Միության պատանի լենինյանների փառապանծ պիոներական կազմակերպության գոյության հիսնամյակը, որ բոլորելու է 1972 թվականին:*

*Սովետական Միության պիոներիայի ընտանիքում իր պատվավոր տեղն է գրավում Հայաստանի պիոներական կազմակերպությունը:*

*Այս համարից սկսում ենք տպագրել Հայաստանի պիոներական կազմակերպության հիմնադիրների և հնագույն աշխատողների հուշերը, որոնք կպատմեն ձեզ, թե ի՞նչ դժվարին ու միաժամանակ ի՞նչ հետաքրքիր ճանապարհ են անցել նրանք:*

## ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՇԵՄԻՆ

Ավերված, քայքայված տնտեսության հետ Հայաստանի բանվորա-գյուղացիական սովետական իշխանությունը ժառանգություն ստացավ նաև սովի ու բնաջնջման մատնված 50.000 որբեր, անապաստան երեխաներ, որոնց անհրաժեշտ էր խնամել, դաստիարակել, ֆիզիկապես ու հոգեպես փրկել կորստից:

Այդ երեխաների ծնողները կոտորվել էին մեծ Եղեռնի տարիներին և ապա 1918—1920 թվականներին դաշնակցական արյունոտ տիրապետության ժամանակ Անդրկովկաս կատարած թուրքական երկու

տական ցածր աստիճաններից մեկը՝ կամեր-յունկերի կոչումը:

Դանտեսի գնդակը կտրեց բանաստեղծի կյանքի թելը: Բայց հասարակությունը, որ ամեն մեկի դիրքը տիտղոսով էր չափում, այս դեպքում անգամ Պուշկինին չէր կարողանում ներել իր վիթխարի անհատականությունը պալատական համեստ կոչման շրջանակներում չտեղավորելու համար:

Երբ Պուշկինի մահից չորս տարի անց, նրա այրին համաձայնում է ամուսնանալ գեներալ Լանսկու հետ, ժամանակի ավնվական հասարակության ներկայացուցիչները այդ նորությունն ընդունում են իրենց դասային ըմբռնումների համաձայն: Ահա մի խոսակցություն, որ իր հուշերում բերում է Վ. Ա. Նաշչոկինան, որը կենդանության օրոք էլ շատ լավ գիտեր Պուշկինին:

«— Նորություն լսե՞լ եք:

— Ի՞նչ նորություն:

— Պուշկինան ամուսնանում է:

— Ո՞ւմ հետ:

— Գեներալ Լանսկու:

— Կեցցե՜, գովասանքի արժանի քայլ: Համենայն դեպս գեներալ ամուսին, և ոչ թե առանց կոչման ու դիրքի ինչ-որ Պուշկին»:

Այս արտահայտությունը որքան էլ հրեշավոր թվա մեզ, բավական ամբողջական պատկերացում է տալիս անձի գնահատության այն եղանակի, որ իշխում էր այն ժամանակվա ավնվական հասարակության մեջ: Քանի որ այդ հասարակության մեջ արժանավայել դիրք ունենալու համար ընդամենը հանճար լինելը շատ քիչ էր:

Ահա թե ինչու անցյալի շատ ու շատականավոր մարդիկ ձգտում էին տիտղոս ավելացնել իրենց անվանը: Նույնիսկ Շեքսպիրը, անմահ Շեքսպիրը, երազում էր տոհմական գերբ ունենալ:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑ*

## ՁԱՐԹՈՆՔ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Ձմեռվա ցուրտ կապանքից
Բնությունն է արթնանում,
Ձնծաղիկը ձյան տակից
Կապույտ աչքերն է բանում.

Հողը փափկում է շնչից՝
Իր մեջ շարժվող ծիլերի,
Որոտի ձայնն առաջին
Լսվում է մութ ամպերից:

Գետը սառույցն է ջարդում
Եվ ափերից խայտալով,
Դուրս է ելնում ու հորդում,
Ցոլք ու փրփուր շաղ տալով:

383-4/






digitised by A.R.A.R.@

ավերիչ արշավանքների ընթացքում: Նրանք մասսայաբար այլասերվում էին անապաստանության մեջ, մի խոշոր մասն էլ՝ ամերիկյան որբանոցներում միսիոներների և սկաուտական կազմակերպության ազդեցությամբ:

Սովետական իշխանությունը չէր կարող հանդուրժել այդ և, աստիճանաբար վերացնելով հիշյալ հակահեղափոխական նպատակներ հետապնդող կազմակերպությունները, նա իր ձեռքը վերցրեց մատաղ սերնդի դաստիարակության գործը:

1921 թվականի հուլիսին Հայաստանում հիմք դրվեց կոմունիստական պատանեկական շարժմանը, կազմակերպվեց պատանի կոմունարների, կրճատ՝ պատկոմների կազմակերպություն, որը պիոներական կազմակերպության նախատիպը եղավ Հայաստանում:

Պատկոմական կազմակերպության օրորոցի մոտ, նրա ծնվելու առաջին իսկ օրից, կանգնած են եղել կոմունիստական կուսակցությունը և կոմերիտմիությունը: Պատկոմների մերձավոր բարեկամներն էին Մյասնիկյանը, Լուկաշինը, Մռավյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Լուսժողկոմատի սոցդաստվար, էնտուզիաստ մանկավարժ Տիգրան Մուշեղյանը և ուրիշներ:

Կուսակցության առաջադրանքով պատկոմական շարժումը ղեկավարեց կուսակցության հավատարիմ զինվոր, տաղանդավոր երիտասարդ կազմակերպիչ Ստեփան Մանուկյանը, մեկ՝ պատկոմներիս սիրելի Ստյոպան:

Ստյոպան բնածին մանկավարժ էր, պայծառ մտքի, հմայիչ բնավորության տեր անձնավորություն, արտաքինով էլ թիկնեղ, գեղեցիկ, օժտված ֆիզիկական կատարյալ տվյալներով:

Պատկոմական շարժումը չունենալով անցյալի ո՛չ տրադիցիաներ, ո՛չ էլ աշխատանքի փորձ, լայն ասպարեզ տալով պատանիների ինքնագործունեությանը, նրանց գրավեց իր շարքերը, մասնակից դարձրեց սոցիալիստական շինարարությանը, նոր կենցաղի, նոր դաստիարակության հիմքերը դրեց:

Ինձ բախտ է վիճակվել 1921 թվականից մի խումբ կոմերիտականների հետ լինել առաջին պատկոմներից մեկը:

Պատկոմների մեր առաջին ջոկատը չէր անցնում երկու տասնյակից: Հավաքվելով Երևանի Անգլիական այգում (այժմ՝ Կոմունարների այգի) կամ Աբովյան փողոցի վրա՝ բանվորական ակումբի բակում, Ստյոպայի ղեկավարությամբ անց էինք կացնում մարմնամարզական վարժություն և կուլտուր-կրթական պարապմունքներ:

Իմ կյանքի ամենաերջանիկ շրջանը պատկոմական տարիներն են եղել: Ես ինքնագործունեության և կոլեկտիվիզմի ուժը առաջին անգամ զգացել եմ այդ կազմակերպության շարքերում:

Առաջին պատկոմները անցան աշխատանքների դժվարին ուղի՝ պայքարելով այդ շրջանում դեռևս ուժեղ սկաուտական կազմակերպության, հին դպրոցի, հին կենցաղի ու սնոտիապաշտության դեմ: Մենք հաղթանակով դուրս եկանք, չնայած պատահել է, որ ծեծվել ենք, անգամ զոհեր տվել, ապրել նյութական դժվարություններ:

Մեր կարմիր վզկապներով, կուռ տողաններով ու զվարթ երգերով, կենդանություն տվինք Երևանի այն ժամանակվա գորշ ու անհրապույր փողոցներին և հրապարակներին:

Այդ գեղեցիկ կերպով արտահայտված է նաև քսանական թվականների մեր երգերի մեջ.

**Պայքար մենք կմղենք**
**Հին աշխարհի դեմ:**
**Ով համարձակ է,**
**Թող գա մեկ ընդդեմ:**

Կամ՝

**Հավաքվեցե՛ք, պատկոմնե՛ր,**
**Սեղմենք մեր կարմիր շարքեր,**
**Պատանի կո-մու-նար,**
**Դու՝ նոր կյանքի շինարար:**

Կամ՝

**Տվեք մեկ մուրճը,**
**Տվեք մեկ մանգաղ,**
**Դեպի կոմունան**
**Շինենք կամուրջը:**

1921—1922 թվականներին Ստյոպայի շուրջը համախմբվեց ակտիվ պատկոմների մի ուժեղ ջոկատ:

Արտո Բկնունին, Պարույր Հարությունյանը, Խաչիկ Մանոյանը, Հովհաննես Յուզբաշյանը, Նորայր Դաբաղյանը, Հրայր Իսաբեկյանը, Ադո Ադոյանը, Խըլղաթը, Պետյանը, Դանիել Գաբրիելյանը, Հաբեթը, Փանոս Սարգսյանը, Սիրակ Մանասյանը, Անդրանիկ Շահինյանը, աղջիկներից՝ Մարո Ալպյանը, Բաբլոյանը, Սալախյանը, Հռիփսիկը, Սիրիկ Այվազյանը, Սեդա Ավետիսյանը, Աղուն Ղարիբյանը, Կարասեֆերյանը, մեր սիրելի «տատիկը»—Բելա Սաղաթելյանը, Ծաղիկը, Արմիկը և ուրիշները:

1921 թվականի օգոստոսին, կուսակցության առաջադրանքով, կազմակերպվեց պատկոմների ագիտացիոն-էքսկուրսիա դեպի Ալեքպոլ (Լենինական), Ղարաքիլիսա (Կիրովական) և Ալավերդի քաղաքները: Այն ժամանակների համար դա պատասխանատու և դժվարին գործ էր: Մեր երիտասարդ հանրապետությունը ապրում էր ռազմական կոմունիզմի շրջանը: Դեռևս անկանոն էր աշխատում երկաթուղին, վատ էր մատակարարման գործը: Այդ պայմաններում մենք՝ 60 պատկոմներս, երկու ապրանքատար վագոններ լցված՝ գնացինք էքսկուրսիա: Հաճախ կիսակայարաններում մեր վագոնները անջատվում և օրերով թողնվում էին պահեստային գծերի վրա: Անբավարար էր մեր սնունդը: Պարենժողկոմատի գրությամբ մենք



digitised by A.R.A.R.@

ձրի մթերքներ էինք ստանում տեղի հեղկոմներից, յուրաքանչյուրիս բաց էր թողնվում 200 գրամ հաց: Օրեր էին լինում, որ ճաշին ստանում էինք խաշած երկու հատ կարտոֆիլ: Չնայած դրան, չէինք ընկճվում, բողոքի ոչ մի նշույլ:

Դժվարությունները մենք հաղթահարում էինք զվարթ երգերով ու պարերով: Իսկ երբ մութը վրա էր հասնում, ամայի կիսակայարաններում կամ ուղղակի դաշտում, կանգնած մեր վագոնների առաջ, Ստյոպայի շուրջը խմբված, լսում էինք նրա «Կարմիր հեքիաթները» հեղափոխության ընդհատակյա պայքարի, քաղաքացիական կռիվների լեգենդար հերոսների, «Պոտյոմկին» զրահանավի ապստամբ նավաստիների մասին և այլն:

Մեր այցը Ալավերդի արտակարգ աշխուժություն առաջացրեց բանվորների և երեխաների շրջանում: Կիսավեր գործարանը դեռ չէր գործում: Մեզ ջերմորեն ողջունեց հին բանվոր բոլշևիկ Սիմոն Էվոյանը: Շուտով տեղում ստեղծվեց պատկոմական կազմակերպություն, որի ղեկավարներն էին մեր սիրելի Հովսեփ Միրաքյանը՝ «Հովմիրը», Արմենակ Թամազյանը և ուրիշներ:

Ղարաքիլիսայում և Ալեքսանդրապոլում մենք հանդիպումներ ունեցանք ամերիկյան որբանոցների որբերի հետ: Հատկապես նշանակալի եղավ մեր հանդիպումները Կազաչի պոստի սկաուտների հետ, որոնց շարքերում ճեղքվածք առաջ բերինք:

Մեր շրջագայությունը տևեց մեկ ամիս: Ի դեպ ասեմ, որ մեր բացակայության ժամանակ թշնամաբար տրամադրված մարդիկ լուրեր էին տարածել, թե իբր բոլշևիկները երեխաներին անվերադարձ Ռուսաստան են քշել: Եղան դյուրահավատ ծնողներ, որ հավատացել, եկել հասել էին մեր ետևից, համոզվել, որ դա հերյուրանք է, և ետ էին վերադարձել:

Կոմունարների այգում մենք կազմակերպեցինք հաշվետու միտինգ և մարզահանդես: Մեզ ողջունեցին կուսակցության և կառավարության ներկայացուցիչները: Ստյոպան զեկուցեց էքսկուրսիայի արդյունքների մասին և ավարտեց այսպիսի կոչով. «Դեպի գո՛րծ, դեպի նո՛ր նվաճումներ: Պատկոմնե՛ր, բանվոր դասակարգի գործին եղեք պատրա՛ստ», «Մի՛շտ պատրաստ ենք»,—թնդաց մեր պատասխանը:

Այդ շրջանում մեր կազմակերպությունը արտադպրոցական էր, պատկոմական կոլեկտիվները գործում էին գործարաններին, հիմնարկ-ձեռնարկություններին կից: Նոր խնդիր առաջադրվեց՝ մտնել դպրոցը, պատկոմների շարքն ընդգրկել նաև գյուղական պատանեկությանը: Առանձին հետադեմ մանկավարժների դիմադրությունը և բազմաթիվ այլ խոչընդոտներ հաղթահարելով, պատկոմական կազմակերպությունը՝ կուսակցության և կոմերիտմիության ղեկավարությամբ, կենսագործեց նաև այդ դժվարին ու կարևոր խնդիրները:

1921 թվականի երկու տասնյակ պատկոմների փոխարեն, 1925 թվականին կազմակերպությունն իր շարքերում ուներ 20.000 քաղաքային ու գյուղական պատանիներ, ո՛չ միայն հայ, այլև ադրբեջանցի, քուրդ և հույն: Նրանք մասնակցում էին շաբաթօրյակների, ծառեր տնկում և կատարում այլ հանրօգուտ աշխատանքներ:

Պատկոմական կազմակերպությունը խոշոր ավանդ ներդրեց աշխատանքային դպրոցի ստեղծման, անապաստանության վերացման, անգրագիտության դեմ մղվող պայքարի գործում:

Մենք՝ հին պատկոմներս, հպարտ ենք, որ Լենինի անունը կրող Հայաստանի պիոներական կազմակերպության ձեռք բերած հաջողությունների մեջ կա նաև մեր համեստ ավանդը:

*Ե. ԽԱԼԵՅԱՆ*

## *Ճանաչիր հայրենի բնաշխարհը*

# ԲՈՐԵՆԻ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*



**Ա. Բրեմը գրել է, որ «բորենին շատ վախկոտ կենդանի է»: Նա ուսումնասիրել է Հյուսիսային Աֆրիկայի բորենիներին, որոնցից երկուսին նույնիսկ ընտելացրել էր և որոնք իրոք որ վախկոտ և բարի կենդանիներ էին: Բայց կենդանին տարբեր երկրում տարբեր վարք ունի: Մեզ մոտ՝ Անդրկովկասում բորենին թե՛ հանդուգն է, թե՛ արյունարբու: Թե որ խաղաղ ու վախկոտ լիներ, մեր ժողովուրդը գազանաբարո մարդուն բորենի՞ կանվաներ:**

**Երբ Ազիզբեկովի Խնձորուտ գյուղում որսորդ Վասակը գիշերվա մթության մեջ դիպուկ կրակոցով սպանեց Մեյսիկ անունով տղային փախցնող գազանին, լիովին պարզվեց, որ այդ արյունարբու արարքների հեղինակը բորենին է:**

**Բայց այն էլ պետք է ասենք, որ հազվագյուտ դեպքերում է բորենին հարձակվում մարդու վրա, այն էլ, երևի, խիստ քաղցի ժամանակ: Նրա հիմնական սնունդը լեշն է, ուրիշ գազանների «սեղանի» մնացորդները և ամեն տեսակի հին ու նոր ոսկորներ:**

**Այդ կարգի սննդին հարմարեցված են բորենու օրգանները: Ա-**



digitised by A.R.A.R.@




# ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԵՆԸ ՏԻԵԶԵՐԱՆԱՎՈՒՄ

*Առանց թթվածնի, օդի և սննդի անհնար է պատկերացնել մարդկային կյանքը: Իսկ ինչպե՞ս հայթայթել դրանք միջմոլորակային հեռավոր թռիչքների ժամանակ, տիեզերական անհուն տարածության մեջ: Հնարավո՞ր է մեծ պաշարներ վերցնել: Չէ՞ որ ճանապարհորդությունը կարող է ամիսներ տևել, նույնիսկ, տարիներ: Մեկ տարում մեկ մարդն սպառում է մոտ մեկուկես տոննա ջուր, ուտելիք, թթվածին: Ուրեմն մի՞թե ամբողջ պահե՞ստ հատկացնել, երբ տիեզերանավի ամեն մի խորանարդ սանտիմետրը պետք է ռացիոնալ օգտագործել:*

*Առաջին հայացքից այդ խնդիրն անլուծելի է թվում: Ամերիկյան հայտնի աստղագետ Մուլտոնը 1935 թ. գրել է, թե ինքը անհնար է համարում միջմոլորակային թռիչքները՝ ի նկատի ունենալով թթվածնի, ջրի և սննդի տեղափոխման հարցը:*

*Սակայն Մուլտոնի մռայլ մարգարեությունից տարիներ առաջ, 1918 թվականին, հնարավոր մի ելք է մատնանշել հրթիռագնացության առաջին տեսաբան Կոնստ. Ցիոլկովսկին, հրապարակելով «Երկրից դուրս» գիտա-ֆանտաստիկական վիպակը: Այդտեղ նա առաջարկում է տիեզերանավում ստեղծել կյանքի համար անհրաժեշտ այնպիսի պայմաններ, ինչպիսիք բնությունն ինքն է մեզ համար ստեղծել Երկրի վրա:*

## ՏԻԵԶԵՐԱՆԱՎԸ ԿՈՉՎՈՒՄ Է «ԵՐԿԻՐ»

*Երկիր և տիեզերանավ... Դրանց միջև, իրոք, ընդհանուր շատ բան կա: Ինչպես մթնոլորտն է տիեզերական ճառագայթներից պաշտպանում Երկրի կենդանական ու բուսական աշխարհը, այնպես էլ տիեզերանավն ինքն է վրահի դեր կատարում իր ներսում գտնվող կենդանի էակների համար: Նավախուցը նման է մեր մոլորակին նաև այն առումով, որ ոչ ինքն է դրսից որևէ նյութ ստանում, ո՛չ էլ կարող է դուրս նետել: Միայն Արեգակն է լույսով ողողում և՛ Երկրի, և՛ նավի պատյանը: Երկրի վրա կյանքը գոյություն ունի միլիարդավոր տարիներ. դա մի անվերջ փոխանցման պրոցես է՝ անօրգանական աշխարհից դեպի կենդանի բջիջը և*

---

տամները խոշոր են, ամուր և սրածայր,—ամենաամուր ոսկորն անգամ չի դիմանում նրանց: Կարճ ծնոտները օժտված են արտասովոր ուժով: Ստամոքսն ու աղիքները հալեցնում, մարսելի են դարձնում անգամ ամենաամուր ոսկորները:

Խիստ ծածուկ և գիշերային կյանք է վարում բորենին: Ապրում է ամայի վայրերում, ցերեկը մրափում է որևէ անձավում և սնունդ ճարելու է դուրս գալիս միայն մթնով: Եվ որովհետև շատ թաքուն կյանք է վարում բորենին, ուստի և նրա կյանքը, բնավորությունը, բազմացումը չի ուսումնասիրված: Միայն խնձորուտում սպանված գազանի մորթուց որոշ պատկերացում ունենք նրա արտաքինի մասին: Մազը կոշտ է, ունի փրչոտ ու ցից բաշ, որ գնալով դեպի թիկունքը կարճանում է: Ականջները մեծ են, պոչը՝ ցանցառ: Բորենու արտաքինը նկարագրող կենդանաբաններն ասում են, որ տգեղ գազան է, աչքերը ծուռ են և ունեն անդուր արտահայտություն: Ծուռ են նաև առջևի ոտքերը: Մեր գյուղացի որսկան Շաքարը մի տարի բորենի սպանեց, ասում էր՝ գլուխը կախ անասուն է, քամակն էլ է կախ, իսկ առաջի ոտները երկար են: Նրա սպանած գազանի մորթին, հիշում եմ, մի տեսակ գույների խառնուրդ էր՝ գորշ, դեղնավուն և վրան հազիվ նկատելի շերտեր կային:

Այդ գազանին ասում են նաև մարդագայլ, իսկ գյուղերում՝ քավթառ-քուսի:

Նշաններ կան, որ բորենին որպես կենդանական տեսակ վերանում է մեր երկրից. վերջին քսանհինգ տարում իր գոյությունը Հայաստանի ոչ մի վայրում նա ցույց չի տվել:

Սրանով վերջացրինք մեր երկրի գիշատիչների նկարագրությունը: Հաջորդ համարից կսկսենք գրել կճղակավոր կենդանիների մասին:



digitised by A.R.A.R.@

հակառակը: Նյութի այդ անվախճան շրջապտույտի շարժիչ ուժը Արևի էներգիան է:

Ոչ բոլոր երկրային էակներն են էներգիա ստանում ուղղակի Արևից. դա միայն բույսերի առանձնաշնորհն է, որոնք ֆոտոսինթեզի միջոցով մեռյալ նյութերը (հանքային աղեր, ածխաթթու գազ և ջուր) Արևի լույսի տակ վերածում են օրգանական մասսայի: Բույսն է Արևի էներգիան մատչելի դարձնում Երկրի վրա ապրող մյուս արարածների համար: Դա է բուսականության վիթխարի դերը մարդու և ամբողջ կենդանական աշխարհի կյանքում: Մենք օրական ուտում ենք Արևի մի մեծ «պատառ»: Մեզանից յուրաքանչյուրը Արևից ստացած էներգիան տիեզերք է վերադարձնում՝ արձակելով մոտ 150 մոմանոց լամպի ջերմություն: Այդ էներգիան արձակելիս, մարդու և կենդանիների օրգանիզմներում ճեղքվում են օրգանական բարդ նյութերը, վերադառնում են Երկրին, որտեղ մոլորակի գլխավոր «սանիտարները»՝ մանրէները դրանք վերածում են պարզագույն հանքային նյութերի, իսկ սրանք էլ կարող են նորից օգտագործվել բուսական բջիջների կառուցման համար:

Օրգանական նյութեր ստեղծելուց բացի, բույսերը կատարում են նաև մի «օժանդակ», սակայն կյանքի համար շատ կարևոր աշխատանք, արտադրելով թթվածին: Ցորենի մեկ հեկտարը ամառվա ընթացքում արտադրում է 15 տոննա թթվածին:

Արևի էներգիան կարող են օգտագործել նաև տիեզերանավում գտնվող բույսերը, կրկնելով իրենց երկրային կյանքը: Եվ եթե իսկապես հաջողվի նավի ներսում ստեղծել մի փոքրիկ բիոսֆերա, տիեզերագնացներին այն կապահովի թթվածնով, ջրով ու սննդով:

70 կգ. քաշ ունեցող մարդու համար օրական անհրաժեշտ է 315 գ. թթվածին, 330 գ. ածխածին, 290 գ. ջրածին, 4,5 գ. ազոտ, 1 գ. կալցիում և ոչ մեծ քանակությամբ բազմազան տարրեր: Այդ բոլորը մենք ստանում ենք Երկրի բիոսֆերայից, որտեղ նյութերի շրջապտույտին մասնակցում են բազմաթիվ կենդանիներ և բույսեր, որոնք մշտական կապի մեջ են միմյանց հետ: Հնարավո՞ր է արդյոք օրգանիզմների այդպիսի փոխգործունեություն ստեղծել նավի ներսում:

## «ԲԱՆՋԱՐԱՆՈՑ» ՏԻԵԶԵՐՔՈՒՄ

Ցիոլկովսկին պռաջարկում էր տիեզերք տանել այնպիսի բույսեր, որոնք առավել հարուստ են սննդարար նյութերով և թթվածնի արտադրության ունակությամբ: Օրինակ՝ բանանը: Ջերմոցի մեկ քառ. մետրում աճող բանանը կարող է ապահովել մեկ մարդու: Ուրիշ գիտնականներ առաջարկում էին դդումը, որի տերևների 3,5 քառ. մ. մակերեսը կարող է մեկ մարդուն ապահովել թթվածնով: Կամ՝ լիանան, որով կխնայվեր ջերմոցի տարածությունը, բամբուկը, որի որոշ տեսակներ աճում են շատ արագ (օրական 70 սմ.) և շատ սննդարար են:

Մանրակրկիտ ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ավելի նպատակահարմար են սովորական բանջարանոցային բույսերը, որոնք կարելի է աճեցնել հիդրոպոնիկ կամ աէրոպոնիկ եղանակով: Բայց սրանք էլ քմահաճ են, դժվար են տանում սննդի և արտաքին պայմանների փոփոխությունները, տարվա տարբեր եղանակներին տարբեր չափով են թթվածին արտադրում: Վերջապես, գիտնականները կանգ առան օվկիանոսային կանաչ բնակիչների վրա. չէ՞ որ ջրիմուռների միջոցով աշխարհը 9 անգամ ավելի օրգանական նյութեր է ստանում, քան՝ ցամաքային բոլոր բույսերից: Այդ միաբջիջ բույսերի հազարավոր տեսակներից ընտրեցին միայն մի քանիսը: Առաջին տեղը հատկացվում է քլորելլային, որն աճում է ոչ միայն ջրում, այլև՝ օդում, ժայռերի, հողի, ծառերի վրա և նույնիսկ մի քանի կենդանի արարածների ներսում (ամյոբային կանաչ գույնը տալիս են նրա մեջ ապրող քլորելլաները): Աչքի համար աննկատելի այդ բույսերի ֆոտոսինթեզման ապարատը 10 անգամ ավելի արագ է գործում, քան բարձրակարգ բույսերինը: Նույնքան արագ է ընթանում նաև նրա բազմացումը: Այնպես որ քլորելլայով լցված մի քանի լիտրանոց անոթը կարող է մարդուն թթվածնով ապահովել շատ երկար ժամանակ: Ահա թե որտեղ էր «փրկության օղակը»: Սա արդեն ֆանտաստիկա չէ: Թափանցիկ խցերում, ուժեղ լույսի տակ աճեցվել են այդ ջրիմուռները և փորձարկվել: Քլորելլան արդեն գնացել է տիեզերք և, վերադառնալով, շարունակել է աճել ու բազմանալ:

## ՏԻԵԶԵՐԱԿԱՆ «ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ»

Այսպիսով, ջրիմուռները կարտոֆիլի, կաղամբի կամ պոմիդորի հետ միասին, հավանաբար, կմտնեն տիեզերական ճաշացուցակի մեջ: Կմատակարարեն թթվածնի մեծ մասը՝ միաժամանակ խցիկի օդը մաքրելով ածխաթթու գազից:

Թվում է, թե ամեն ինչ կարգին է: Բայց չէ՞ որ հազարամյակներով մարդու սննդի մեկ երրորդը կազմել են կենդանական սպիտակուցները: Իսկ որտեղի՞ց ձեռք բերել միսը: Ուրեմն տիեզերանավում անհնար կլինի յոլա գնալ առանց անասնապահական, թեկուզ և շատ փոքրիկ «ֆերմայի»:

Նորից հարց է ծագում. ի՞նչ կենդանի վերցնել: Պարզվել է, որ ամենից ձեռնտուն մանրերն են, հատկապես՝ ճագարները, որոնք քիչ տեղ կզբաղեցնեն, քիչ թթվածին կծախսեն և պահանջկոտ չեն կերի նկատմամբ: Մյուս թեկնածուները հավերն ու բադերն են,



digitised by A.R.A.R.@

որոնք լավ են աճում վանդակային պայմաններում և քիչ կեր ստանալով՝ շատ միս են արտադրում: Հավերին կարելի է կերակրել անձնակազմի սննդի մնացուկներով, ջրիմուռներով, բանջարեղենի և պտուղների թափթփուկներով: Անկման դեպքում հեշտությամբ կարելի է վերականգնել դրանց գլխաքանակը:

Չի բացառված, որ նավում հայտնվի նաև ակվարիում՝ ծածաններով և համեղ խխունջներով:

## ԻՍԿ Ի՞ՆՉ ԱՆԵԼ ԹԱՓՈՆՆԵՐԸ

Տիեզերքում ամեն ինչ պրոբլեմի է վերածվում: Նույնիսկ եթե ապագա տիեզերանավի խոհանոցում ծվածեղ եփեն, դա էլ իր հերթին կվերածվի մի նոր պրոբլեմի: Չէ՞ որ չես կարող դռնակ բացել դեպի տիեզերք: Իսկ ի՞նչ անել թափոնները՝ բույսերի, կենդանիների, մարդկանց կենսագործունեության արտադրանքը: Օրգանական թափոնների միջավայրում լավ կաճեն բլորելլաները: Մանրէները մնացորդը կքայքայեն ու կվերածեն անօրգանական աղերի, ինչպես անում են Երկրի վրա: Իսկ այն, ինչ հնարավոր չէ արագ քայքայել (փետուր, ոսկոր, մազ և այլն) հարկ կլինի այրել: Այժմ սկսել են այրվող թափոններն օգտագործել հատուկ հրթիռային շարժիչները գործի գցելու համար, շարժիչներ, որոնք օժանդակ մանևրներ են կատարում ուղեծրից-ուղեծիր անցնելիս կամ մի կողմ թեքվելիս:

Իսկ ջրի՞ հարցը: Մեկ մարդը միայն խմելու համար տարեկան օգտագործում է մոտ 800 լիտր ջուր, իսկ լվացվելու համար՝ է՛լ ավելին:

Անհնար է վերցնել ջրի այդքան ահռելի պաշար:

Այժմ արդեն հայտնի են ջրի մաքրման մի քանի եղանակներ: Դրանցից ամենահասարակը ջրի թորումն ու սառեցումն է: Իսկ մարմնից անջատվող ջրի համար կարելի է օգտագործել իոնափոխանակիչ հարմարանք կամ քիմիապես քայքայել միզանյութը, որից հետո այդ ջուրը նորից կծախսվի օրգանական նյութերի ստեղծման վրա:

## ԱՊԱԳԱՅԻ ՇԵՄԻՆ

Ահա այսպես է պատկերացվում նյութերի շրջապտույտի փոքրիկ պատճենը փակ, թռչող «աշխարհում»: Սակայն տիեզերական թռիչքի ռեալ պայմաններում ամեն ինչ չի կարող ընթանալ այդքան պարզ ու մեկին: Անակնկալներն անխուսափելի են: Կենդանի օրգանիզմներից կազմված սիստեմը շատ ճկուն է, զգայուն՝ արտաքին պայմանների նկատմամբ, հեշտությամբ փոփոխվում է աննշան գործոնների առկայությամբ: Ահա մի օրինակ. պատերազմից հետո պատահաբար Սև ծով էր անցել գիշատիչ կակղամորթի մի տեսակ՝ ռապանան, որն արագ բազմացավ և սկսեց իր ուղղումները մտցնել այդ ծովի մշտական բնակիչների կենսաձևում: Սև ծովում համարյա անհետացան ոստրեները, պակասեցին միդիաները, երևացին ձկների նոր տեսակներ, խեցգետիններն ավելի խոշորացան, իսկ ծածանը դարձավ ամենակեր: Այս օրինակը ցույց է տալիս, թե որքան ջանքեր են պետք ուսումնասիրելու և վերջնականապես համոզվելու համար, թե ընտրված բույսերն ու կենդանիները տիեզերական պայմաններում իսկապես կգործեն հօգուտ մարդու և չի խախտվի փոքրիկ աշխարհի արարածների միջև ներդաշնակ փոխգործունեությունը:

Երկրում բուսականության և կենդանական աշխարհի հարաբերությունը համարյա անփոփոխ է. բուսական զանգվածը 10 հազար անգամ ավելին է կենդանականից: Տիեզերանավում համամասնությունը բոլորովին այլ է լինելու: Եթե Երկրի վրա մարդու օրգանիզմում միևնույն ատոմի բազմակի թափանցման հնարավորությունը չնչին է, ապա նավում յուրաքանչյուր ատոմ կարող է բազմիցս օգտագործվել: Կարագանա նաև նյութերի շրջապտույտը:

Դրանից չի՞ արագանա նոր տեսակների առաջացման պրոցեսը: Իսկ երկարատև անկշռելիությունը, օր ու գիշերվա հերթափոխության վերացումը, տիեզերային ճառագայթումը ի՞նչ ազդեցություններ կունենան մարդու, կենդանու, բույսի վրա:

Այսպիսի բազմաթիվ խնդիրներ կան, որոնք պետք է իրենց վերջնական լուծումն ստանան, նախքան ճանապարհ կընկնի հեռավոր ռեյսի առաջին տիեզերանավը: Այդ ուղղությամբ այժմ տքնաջան աշխատում են հետազոտողների ամբողջ կոլեկտիվներ՝ կենսաբաններ, քիմիկոսներ, ֆիզիկոսներ, ինժեներներ, և հեռու չէ այն օրը, երբ փոքրիկ մի «աշխարհ» իր հետ վերցրած՝ մարդը ուղղություն կվերցնի այս անգամ արդեն դեպի Մարս կամ Վեներա:

Ս. ՍՏԱՐԻԿՈՎԻՉ



digitised by A.R.A.R.@

# ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆԻ
## ԳՐԱՌՈՒՄՆԵՐԻՑ

*Արարատի նահապետական հայացքի տակ աճում է ու հասակ քաշում հայ ժողովուրդը:*

*Կուզեի հազար տարի ապրել իմ հայրենակիցների հետ, հազար տարի նայել Մասիսին, հազար տարի սիրել, խորհել, ստեղծել, հազար տարի ապրել ու նորից չմեռնել— այնքա՜ն գեղեցիկ է, մե՜ծ է աշխարհը: Զգալ մարդը, տիեզերքը, ընդգրկել նրան, հասկանալ նրա խորհուրդները ու տիեզերականանալ:*

*Սևանը այնքա՜ն գեղեցիկ է, որ մարդը ուզում է խեղդվել մեջը:*
*Սևանը՝ երկնքից ընկած մի կտոր:*
*Սևանը լիալուսնի ժամանակ ուղղակի հրաշք է, կախարդական հեքիաթ. հարբում է մարդ նայելով:*

*Սիրո՛վ չափեցեք— թո՛ղ լինի ձեր միակ չափը ամեն բան չափելիս:*

*Սերն է քարից կյանք ստեղծել, ծաղիկներին գույն ու բույր տվել, թռչուններին՝ երգող քնար ու սրինգ:*
*Սերը, իսկական սերը, արտահայտվում է միայն վոհաբերության մեջ:*

*Երջանիկը ջահել հոգու նշան է, կրիտերիում է ջահելության՝ ուժի, դինամիկայի, ծեր մարդը չի երազում:*

*Լուսինը լճակի մեջ բանաստեղծություն է, իսկ երկնքում՝ իրականություն և նվազ գեղեցիկ, հմայիչ:*

*Երաժշտությունը ձայների, հնչյունների միջոցով կառուցում է պալատներ, պարտեզներ, լեռներ, նա իր հնչեղ գույներով նկարում է անտառներ, գետեր, դաշտեր:*

*Իտալական ներկա, տակավին ողջ կատակերգու դերասաններից մեկը, որի բեմի վրա միայն երևալն արդեն ծիծաղի փոթորիկ է բարձրացնում, հիմա ծերացած լինելով, քաշվել է և Նեապոլի մոտ մի վիլլա է շինել, ուր ապրում է անդորրիկ, և պատի ճակատին գրել է՝*
*— «Հիմա ծիծաղում եմ ես»:*

*— Մի գյուղացի, աղքատ ու խեղճ, մեռնում է. կինը լաց է լինում և գովելով, լալով ասում է.— Վա՜խ, էս Արաբստանի ծիրտ մատաղ, որ անտեր մնաց, վա՜խ, քո նոր տնկած բաղիդ մատաղ, վա՜խ, քո ոչխարի հոտիդ մատաղ...*
*Հարևանուհիները զարմացած իրար են նայում. մեկը չի համբերում ասում է.— Քույրի՛կ ջան, քո մարդը մի՞թե ուներ էս բաները...*
*— Չունե՛ր, չունե՛ր, բայց փափա՛գն ուներ, մտքո՛ւմ կար:*

Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Ցկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15,*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05030: Պատվեր՝ 49: Տպաքանակ՝ 71600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 19/II 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.






digitised by A.R.A.R.@

ԳԻՆԸ՝ 10 Կ



# ՍՊԱՍՈՒՄ Է ԳԱՐՆԱՆ ԳԱԼՈՒՆ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Ծեր ագռավն է կանչում՝ ղա՛, ղա՛,
Քամին ծորի ծյունը հալում,
Իրենց գյուղում մի ժիր տղա
Սպասում է գարնան գալուն:
Նայում է լուռ հանդ ու սարին,
Ուրախանում փոքրիկ տղան,
Գիշերներով ձմեռային
Երազներ է տեսնում գարնան:
Ձայն է տալիս քնած արջին,
Լսում առվի երգ ու զնգոց,
Եվ մանուշակն է առաջին
Որ երազով տանում դպրոց:
Թող կանաչեն ծիլերն հողում,
Ծիծառները թող շուտ դառնան...
Մի երեխա իրենց գյուղում
Սպասում է գալուն գարնան:

Նկ. Հենրիկ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ՝ 77806

digitised by A.R.A.R.@